ՄԻՍԱՔ ՄԱՆՈՒՇԵԱՆ

# ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆՆԵՐ









ՓԱՐԻԶ

ՏՊԱՐԱՆ Պ. ԷԼԷԿԵԱՆ

1946





**ՄԻՍԱՔ ՄԱՆՈՒՇԵԱՆ**

(1906 – 1944)

# ՄԻՍԱՔ ՄԱՆՈՒՇԵԱՆ



*Միսաք Մանուշեան ծնած է 1906ին Ատը-Եաման, աղքատ պարտիզպանի մը ընտանիքին մէջ։ Դեռ մանուկ, 1914-18ի արհաւրալից օրերուն կը կորսնցնէ իր ծնողքը և պատերազմի վաղորդայնին, Լիբանան, Ճիւնիայի ծովափին բարձրացող հայկական որբանոցին մէջ կը ստանայ իր նախնական կրթութիւնը։*

*1925ին, որբերու հետ, Ֆրանսա կը տեղափոխուի ճանչնալու համար աշխատաւորի անստոյգ ու դժուար կեանքը։ Մէկէ աւելի քաղաքներու մէջ, զանազան գործեր կ'ընէ. Սիթրօէնի ինքնաշարժի գործարանի բանուոր, ատաղձագործ, նկարիչներու քով* մօտէլ, *դարձեալ մետաղագործ բանուոր ևայլն։*

*Որբանոցի գրասեղաններուն վրայ իսկ բանաստեղծութիւններ գրող և իր ուսուցիչներու ուշադրութեան արժանացող Միսաք Մանուշեան, հակառակ այս դժուար պայմաններուն, լաւագոյն ձգտումներով է տարուած։ Ֆրանսերէն կը սորվի, յափշտակութեամբ կը հետեւի իր շրջանի գրական շարժման և կը կարդայ դասական հեղինակներ։ Կը գրէ ալ. 1930ին, Ս. Սեմայի և ուրիշներու հետ կը հրատարակէ «Ջանք» «Նորագոյն գրողներու ամսաթերթ»ը, որ իր 12 թի-*

ւերու երկայնքին անվերջ ճիգ կ'ընէ գրական հին հասկացողութիւններէն ձերբազատուելու, նոր միտք և շունչ մուծելու հայկական միջավայրէն ներս։

Փարիզն իր գործարանային կեանքով, ընկերային և յեղափոխական շարժումով, ինչպէս նաև մեր գաղութի կեանքէն ներս մղուող պայքարը Խ. Հայաստանի հետ և անոր դէմ, իրենց կնիքը կը դնեն կազմաւորուող Մանուշեանի մտքին վրայ։ Եւ, հետզհետէ, երազուն բանաստեղծը, իր ապրումներով ու պայքարներով, աւելի ու աւելի կը նոյնանայ աշխատաւոր զանգուածներուն հետ։ Ան դուրս կուգայ մենութենէն ու կը խառնուի ամբոխին։

Յետ այսու Մանուշեան պիտի ապրի մեր գաղութի հայրենասէր ու յառաջդիմական հատուածին կեանքը․ ան իր բոլոր ուժերը պիտի դնէ ի սպաս մեր երկրին և ժողովուրդին։

Իր հասարակական գործունէութիւնը կը սկսի 1933ին Հօկի մէջ, ուր ան կը յայտնուի որպէս ուժեղ կամքի և զոհողութեան ոգիի տէր հանրային գործիչ։ Անոր հասարակական տեսակէտները արագօրէն կը զարգանան։ Խ. Հայաստանի օգնութեան և պաշտպանութեան գաղափարներէն ան կ'անցնի յեղափոխական աշխարհահայեացքի, ու, 1934ին կը յարի կոմունիստական կուսակցութեան։

1935ին կ'ընտրուի Հօկի Կեդր. Վարչութեան անդամ և կ'ըլլայ երկրորդ քարտուղար։ Նոյն տարին կը սկսի խմբագրել «Զանգու» աշխատաւորական շաբաթաթերթը որ կը հրատարակուի մինչև 1938, Մանուշ-

խանի գուրգուրանքով և նուիրումով։ Նոյն տարուան յուլիսի 14ին կը մասնակցի Հօկի վերջին պատգամաւորական ժողովին, ուր կազմակերպութիւնը պիտի լուծուէր և ծնունդ առնէր Ֆրանսահայ Ժողովրդական Միութիւնը, որու Կեդր. Վարչութեան քարտուղարը կը դառնայ։ Կը մասնակցի նոյն տարին լոյս տեսնող «Նոր Կեանք» օրաթերթի խմբագրութեան։

1939ին Մանուշեան մեր գաղութի առաջամարտիկ շարժման ամենայայտնի դէմքերէն մին է, ու, այն շրջանի ֆրանսական իշխանութիւնները, պատերազմի յայտարարութեան երկրորդ օրն իսկ, սեպտ. 3ին, զայն կը ձերբակալեն, 3 ամիս կը պահեն Սանթէի բանտը, որմէ յետոյ զօրակոչի կ'ենթարկուի եւ կը մեկնի բանակ։

Ֆրանսայի ժամանակաւոր պարտութենէն և զօրացրուումէն ետք զայն կը գտնենք Փարիզ, հայկական դիմադրական շարժման առաջին խումբերուն մէջ։

Հիտլերական Գերմանիոյ Խ. Միութեան վրայ յարձակման յաջորդ օրը, 1941 յունիս 23ին դարձեալ կը ձերբակալուի և 4 օր Փարիզ, Թուրէլի կեդրոնացման ճամբարը մնալէ ետք, կը տարուի Գոմփիէնյը ուրկէ ճարպիկութեամբ կրնայ ազատուիլ օգոստոս 9ին, կրկին նետուելու համար յեղափոխական ընդյատակեայ պայքարի մէջ։ Այս շրջանին բանաստեղծ Մանուշեանի կեանքը կ'իմաստաւորուի հակա-ֆաշական անդուլ գործունէութեամբ մը, որ անցնող ա-

միններուն հետ, մինչ աւելի պիտի չեչտուէր ու դառնայ աւելի հատու։

Գերման բռնագրաւիչներուն դէմ, Ֆրանսայի ներքին դիմադրական շարժումը 1941էն իսկ, պայքարի քաղաքական միջոցներուն զուգընթաց, կազմակերպեց արձակազէններու խումբեր, թշնամին հարուածելու համար գիւղերու և քաղաքներու մէջ։ Ոչնչացուեցան գերման զինուորական ուժեր, խանգարուեցան և քանդուեցան անոնց փոխադրական միջոցները, օդը հանուեցան կամ աւրշտկուեցան անոնց ծառայող գործարանները։

1942ի նոյեմբեր 10ին, Մանուշեան իբր պարզ զինուոր կը մտնէ Ֆրանսայի ներքին ուժերու շարքերը։ 1943ի ապրիլ 15ին, Լըվալուայի մէջ, ան կը կատարէ իր առաջին յարձակումը ռումբ մը նետելով 20ի մօտ էս-էսներու վրայ, որոնց 4ը մեռան և 8ը վիրաւորուեցան։ Ապրիլ 17ին, փարիզեան շրջանի օտար արձակազէններու վերին հրամանատարութեան որոշումով, Մանուշեան կը նշանակուի արձակազէններու քաղաքական կոմիսար։ Մայիսի 5ին կը դառնայ երկու խումբերու զինուորական հրամանատար։ Որմէ յետոյ, անոր գործունէութեան դաշտի ընդարձակման զուգընթաց կը բարձրանայ անոր հեղինակութիւնը և ան իր հրամանատարութեան տակ գտնուող խումբերով կը դառնայ գերման իշխանութեանց աննշմարելի սարսափը։ Փարիզ և Փարիզէն դուրս, թշնամին կը ստանայ հարուած հարուածի վրայ։ Բարձրաստիճան զինուորականներ Ռիթէրի և

զօր. ֆոն Շաումպուրկի զգետնում, թէ բազմաթիւ զինուորական փոխադրական կառքերու ջախջախում՝ ներսի զինուորներով, այլազան վնասարարութիւններ, թէ ամբողջ կառաշարքերու քանդում երկաթուղիներու վրայ իրար կը յաջորդէին։ Ու, աշխատաւոր, հրապարակագիր և հանրային գործիչ բանաստեղծը հայրենասիրական վրիժառու զայրոյթով գործնականօրէն կը հրամայէ ամբողջ փարիզեան շրջանի օտար դիմադրական ուժերու զինեալ հատուածին։ Անոր հրամանատարութեան տակ, բազմազգի անյայտ մարտիկներ, որոնց շարքին որոշ թիւով հայեր, կը մարմնաւորէին մեծ մայրաքաղաքի օտար բնակչութեան հակաֆաշիստ պայքարի կամքը, որու նպաստը Ֆրանսայի ազգային ազատագրական շարժման, կ'ըլլայ պատուաբեր։ Ահա թէ ինչո՛ւ ֆրանսական Ազգային Ճակատի ընդհանուր քարտուղար և երեսփոխան Փիէռ Վիյօն, ֆրանսական դիմադրական շարժման Ազգային Խորհուրդի եւ Զինուորական Ազգային Կոմիտէի անունով, 1945 փետր. 25ին, Իվրիի գերեզմանատունը, Մանուշեանի գերեզմանին վրայ կ'ըսէր.—

«Մանուշեան եւ իր ընկերները հազարաւոր ֆրանսացիներ խանդավառեցին իրենց հերոսական օրինակով։ Անոնք ցոյց տուին, թէ կռուիլ ու զոհ տալ աւելի խնայողական էր ազգային ուժերու տեսակէտէն քան ստրկօրէն լռել ու տանիլ թշնամու լուծը»։

*
* *

Ինչպէս ընթերցողը պիտի տեսնէ, հայրենական պատերազմի հեռաւոր ճակատի և ազատութեան այս մարտիկը, զէնքով ու ռումբով խօսելէ առաջ, բնութեան, սիրոյ ու մարդկային այլ զգացումներու և ազատութեան գաղափարի երգիչն է եղած։ Եւ անգա՛մ մահուան դրան առջեւ, գնդակահարուելէ քիչ առաջ, ան իր վերջին նամակով, կը փափաքի իր ստեղծագործութեանց հրատարակումը։ Իր ընկերները պարտք մը սեպեցին ի մի հաւաքել այս ցրուած երգերն ու մեր հանրութեան յանձնել։ Հաւանաբար ասոնք ամբողջ չեն։ Մանուշեանի բանաստեղծութիւնները ցիր ու ցան են ոչ միայն թերթերու և հանդէսներու մէջ, այլ և, մանաւանդ անհատներու մօտ, անտիպ թերթիկներով։

Մեր ժողովուրդը սիրով պիտի յիշէ իր բանաստեղծ ու ռազմիկ որդին, որ գիտցաւ դառնալ ֆրանսահայ դիմադրական շարժման ամենաուժեղ արտայայտութիւնը, գործնականօրէն մասնակցելով հայրենիքի պաշտպանութեան նուիրական գործին և կենդանի պահելով հայ ժողովուրդի դարաւոր ու ազատատենչ աւանդութիւնները։ Ու երբ այսօր, Ֆրանսայի հայ առաջամարտիկ սերունդի այս ներկայացուցիչը յետ մահու, իր հերոսական գործերով մուտք գործած հայրենի անդաստանէն ներս, իր արժանի տեղը կը գրաւէ հայ հոգիներուն մէջ, տեղին է կը կարծենք, անոր կեանքին նուիրուած այս քանի մը տողերը վերջացնել, Հայաստանի սովետական գրողներու օրկան, «Գրական Թերթ»ի սա բառերով.—

«Բանաստեղծ-ռազմիկ Մանուշեանի սքանչելի կեր-

պարը իր տեղը կը գտնի մեր երախտագէտ ժողովրդի յիշողութեան մէջ։ Հայ ժողովուրդը իր ազգային պանթէոնը կը մտցնէ եւս մի հերոս, որն իր անունով զարդարում է քաղաքակրթութեան համար մեր ժողովուրդի մղած պայքարի դիւցազնական տարեգրութիւնը»։

ՄԱՆՈՒՇԵԱՆ ԿՈՄԻՏԷ

Փարիզ, օգոստոս 1946

# ԴԷՊԻ ՓՐԱՆՍԱ

Համայնատարած գիշերի փէշերն ինկեր են լռին,
Արեւէն արփած Միջերկրականի հոլանի մէջքին.
Զերդ բոլորաձեւ գըմբէթ տաճարի, երկինքն աստղածիր
Իջեր է ծովուն վըրայ հորիզոնն անծիր.

Զեփիւռ մը թեթեւ՝ կը ժողվէ ջուրին բոյրերն աղեհամ,
Ու կը սըրսկէ մազերուս, դէմքիս վըրայ յարաժամ...
Երկաթ կողերը խըրած ջըրերու գաղջ ծալքերուն մէջ,
Նաւը լուսավառ՝ կը ճեղքէ մութին խաւերն անընդմէջ:

Եւ ինչպէս նաւու միշտ դէպի առաջ սըլացքէն բըղխած
Ծովու գիշերին խորի՛ն, համասփիւռ խորհուրդէն գերուած
Ջըրերը փըփրուն, խելագար վազքով դէպ յետ կը հոսին,
Միտքս այնպէս ետ եւ հոգիս յառաջ կ'երթայ տենդագին:

Ետիս եմ թողած բընութեամբ սընած մանկութիւնս արեւ,
Եւ թշուառութեամբ, զըրկանքով հիւսուած որբութիւնն իմ սեւ.
Դեռ պատանի մ'եմ թըղթի եւ գըքի երազէն գինով,
Կ'երթամ հասուննալ գիտակցութեան ու կեանքի վաստակով:

Բաղձանքս անհուն է եւ նըման ծովուն այս անծայրածիր.
Անմեկնելի է՝ ինչպէս խաւարին խորհուրդն անյարիր...
Կ'ըղձամ ըմբոշխնել լոյսն իմաստութեան, արուեստի՝ գինին
Եւ խլել կեանքի մեծ պայքարին մէջ դափնիներ անգին...:

1924-25

# ՎԵՐԱՑՈՒՄ

Երբ ունայնութեան դէմքը ծիծաղի
Մըտածումներուս ու սրտիս տենչին,
Երբ ճանճրոյթն անարգ՝ պարէ իմ չորս դին,
Կը մտնեմ ուղին իմ երազանքի:

Կեանքըս լըճացած՝ ծո՛վ կ'ըլլայ անհուն,
Իտէալս՝ փարոս՝ կը լուսէ հեռուն.
Հովերն ինծի հազար գաղտնիք կը խօսին
Ու գիս խաւարէն կը տանին լոյսին...:

Նաւակս, հովերու քըմայքին հըլու,
Մերթ հարաւ կ'դիմէ ու մերթ հիւսիսին.
Լըքած իմ նիւթին ըղձանքը ուսին
Ու կ'երթամ ազատ՝ երազն ապրելու...:

Ունայնութեան շունչն ի զուր ինծի կ'ոռնայ,
Խաւարի դիրկն է նենգ ճանճրոյթս հիմա,
Մինչ ես աստղերուն, լուսնին հետ ընկեր՝
Լոյսերու անհուն անդունդն եմ ինկեր...:

Կը դիտեմ համայն աշխարհն այդ վերէն,
Ու դըժոխքն ափսո՛ս, կ'առնեմ ակամայ,
Կեանք կոչուած սա մութ պաստառին վըրայ.
— Մարդիկ աներազ լոկ ըստրուկներ են:

Շաթընէ

## ՀԱՅԵԼԻՆ ԵՒ ԵՍ

Աչքերուդ մէջ յոգնութիւն, ճակտիդ վրայ՝ կնճիռներ,
Մազերուդ մէջ ճերմակներ, տես ճերմակներ կան ընկեր
Այսպէս կ՚ըսէ յաճախ ինծ խորագնին հայելին,
Ամէն անգամ, երբ դիտեմ ինքզինքս իր մէջ ես լուին:

Բոլոր օրերս մանկութեան, բոլոր օրերս պատանի,
Մերթ սիրտս ամբողջ պոկած՝ ողջակիզեր եմ բռնի
Ժամանակի պահանջկոտ ունայնութեանց սեղանին
Ապաւինած միամիտ՝ լոկ յոյսերու խոստումին:

Թիապարտի պէս տանջուած, որպէս ըստրուկ հալածուած՝
Անարգանքի, գրկանքի խարազանովն եմ մեծցած
Միշտ մահուան դէմ կռուելու, կեանքն ապրելու ի խնդիր
Քաղցր ամէն հմայքին եղեր եմ ես ունկընդիր:

Դառնութիւնն որ խմեր եմ, սակայն հոգսի բաժակէն,
Ըմբոստութեան եւ ուժի փոխուեր է մէջս հուլօրէն
Ու գայրոյթով ծաւալուն համբերութիւնս ալ հիմա
Երգի արգանդն ամբարած տարրերուն պէս կ՚սպառնայ:

Ի՜նչ փոյթ, ի՜նչ փոյթ թէ գոնէ
Ժամանակը ցանէ թող մազերուս մէջ ճերմակներ
Կը խորանայ, կը լայննայ ու կը հոսի յորդառատ
Գիրկն անսահման մարդկութեան որպէս իր մայրն հարազատ:

Ու մենք վէճի կը նստինք ժամանակին յանդիման·
Ես միամիտ, երազուն, ան իրատես հեգնական·
Ժամանակն ինչ փոյթ թէ ցանէ մազերուս մէջ ճերմակներ
Հոգիս գետի պէս կ՚առնէ ամէն օր նոր հոսանքներ։



# ԲՆՈՒԹԵԱՆ ՀԵՏ

Վարագուրեր է խաւարն համօրէն
Հորիզոնն անծիր հողին ու ջուրին,
Ու գոյներ, ձայնե՛ր կախարդուած՝ մութէն,
Գիշերին գաղջ գիրկն իրար կը ձուլուին...

Խաւարի պէս լո՛ւռ, անոր պէս խոհուն,
Ովկէանի ափին կանգնած եմ մինակ.
Լոյսէ յոգնաբեկ խոհերս ալ համակ,
Յանձներ եմ ծովու գինով խաղերուն:

Մեղկ հարսի նման, տարփանքով մը հեշտ
Կը փռուի տամուկ աւազին վրայ
Ու շրթներով պաղ՝ համբոյրներ կուտայ
Ինծի որ իրեն սիրահարն եմ խենթ:

Զեփիւռ մ'է թեթեւ, կը շոյէ անհուն
Պաստառը ծովուն ու կանանչն հողին.
Կը տարուբերուի ծովը անձկագին
Ներդաշնակ ու մեղմ երգ մը շրթներուն:

Լուսինն այս գիշեր երկչոտ պատանի,
Կը սիրաբանէ մութին հետ գաղտնի:
Խաւարը տակաւ, կ'երկնէ իմ չորս դին
Արեւը վաղուան, շարժումը կեանքին:

*Գինով եմ, ահ ես գինով ուղխօրէն,*
*Բնութեան դիւթող այս լուռ բարբառէն·*
*Կեանքէ որբացած հոգիիս վրայ*
*Անհունի երգին խորհուրդը կ'իյնայ...*

13–8–1929, Կրանվիլ



# ՎԵՐԱԳՐՈՒՄ

Խաւով ծով է հոգիս նորէն
Հին սեւ յուշեր տարտամօրէն
Մըտքիս մէջ լուռ կը տողանցեն...:

Կը շղթայուին իղձերս բոլոր
Թոյն կը ծորէ անցեալս մոլոր,
Երազներուս թարմ աւիշէն:

Երէկն այսօր կը վերապրի:
Ինչպէ՞ս ըլլալ, նոր երազի
Նոր յոյսերու, սիրոյ ընկեր:

Սեւով հիւսուած արցունք օրեր,
Կապուած, աւա՜ղ, սրտիս յաւէտ.
Ցաւն ա՛լ հերիք, եղէք անհետ:

Մտքիս կապանք, թոյն էք սրտիս.
Ես ձեզ կ՚ատեմ... այլ ակամայ
Ողնայարն էք կեանքիս հիմա:

1–6–1930, Փարիզ

## ՉԵՄ ԱՓՍՈՍՈՒՄ

Չեմ ափսոսում, այն օրերին,
Որ անցել են չար ու բարի,
Մերժում է սիրտս երգերն այն հին,
Որ յուզում են տարիների
Յուշերն արնոտ իմ հոգու մէջ:

Չեմ ափսոսում, լոյս ու գինով
Խրախճանքի այն պահերին,
Որ ապրել է բիւր երազով
Որպէս թիթեռ վարդի սրտին,
Սիրոյ ծարաւ իմ խենթ հոգին:

Այնքան անցուկ մեր կեանքը սին,
Մայր բնութեան մի ծաղրն է լոկ,
Արժէ՞ բառնալ նրա ուսին,
Հազար ափսոս, հազար մորմոք:

Չեմ ափսոսի, թէկուզ կորչեմ
Չքնաղ երազ սա աշխարհից
Ես տիեզերքն ունիմ իմ դէմ
Մրտածումիս իբր ուղեգիծ:

15-11-30, Փարիզ

# ՆՈՐ ՏԱՐԻ

Ուսուցչիս՝ Գ. ՊՕՂԱՐԵԱՆԻՆ

*Հոգիս տարօրէն լո՜ւռ է այս գիշեր.*
*Ձանձրոյթ մը մըթին զայն իր գիրկն առեր,*
*Թախիծէ թախիծ կը տարուբերէ։*

*Իղձերս պղտոր չեն բերեր ինծի,*
*Հրճուանքն անհուն որ ամբոխն արդ կ՚ապրի.*
*Կը թերթեմ անվերջ յուշերն անցեալի։*

*Որչափ կ՚ըղձայի ըլլալ այս պահուն,*
*Մէկ վանկը սիրոյ այն բուխ երգերուն*
*Ուր սրտեր ջերմով իրար կը խօսին...*

*Հայելիին մէջ կը ճգնիմ ի զուր*
*Ժպիտ մը փոխ տալ շրթներուս տխուր՝*
*Ըլլալու ընկեր՝ փողոցի երգին։*

*Կը նայիմ խռով՝ պահին որ կ՚իյնայ*
*Կեանքի յարաճեմ անիւին վրայ*
*Ու չուրջս ամէն իր կարծես կը հիննայ։*

*Հոգիս այս գիշեր փոթորկոտ ծով է...*
*Կեանքի խօլ քամին ի զո՜ւր կը հովէ*
*Մտածումներուս առագաստն աւեր...*

1-1-1931, Փարիզ

# ՀՈՂԻ ԿԱՐՕՏ

Լեռներու կրծքէն կ'երկարին մինչ գիւղ,
Հորիզոնի գաղջ կանանչը գըծող
Ճերմակ ճամբաներ... ու գերդ ծով անծիր,
Դաշտեր ծոցւորուած ու դաշտեր կարմիր։

Բռներ եմ գիւղի ոլոր ծառուղին.
— Արեւս ուսերուս որպէս ծիրանի,
Շրթներուս դողդոջ՝ հին երգ մ'արօրի, —
Կ'երթամ սիրտս յանձնել լեռներու սրտին...

Ինձ թըլթենիներ կ'ուղեկցին աջ, ձախ,
Նըշենիներ մերթ կը ժպտին ուրախ,
Մերթ վարդաստանէն կուգայ հըրաւէր.
Բուրմունքն համօրէն երկիրն է գըրկեր։

Սըրինգն հօտաղին, կը կանչէ իրեն՝
Նախիրն, յուլօրէն, բերքի սարն ի վեր,
Հորթուկներ նաշխուն, դունչերն վեր առեր,
Ու գառներ, ուլեր արեւ կը չնչեն։

Ծիծառներ տաղմով կ'անցնին միջոցէն
Ու մեղմ համերգով գարունը կ'երգեն...
Ճամբաս կ'ոլորուի ու, քայլերս հըլու,
Կ'առնէ կը տանի ծոցն այգիներու։

Արեւին ոսկի ցնցուղն ուղխօրէն
Կը բաշխէ կեանքի ափին որթերուն,
Որոնք բեռնաւոր անձկութեամբ անհուն
Քաղողներու ժիր ձեռքին կը սպասեն։

Բոյրը խաղողին, երգը ծղրիթին,
Ու դեռ անհամար սրտի ձայներ հին,
Մայրական անուշ բառերուն նման
Կ՚օրօրեն հոգիս՝ սիրով անսահման։

Այգիէն գինով՝ կ՚երթամ գետակին,
Ուր ծեր ուռիներ յաւէտ կը պատմեն
Իրենց տրտմութեան գաղտնիքն անցեալին.
Ջրերն անտարբեր ու խեռ կը հոսին...։

Քայլերս մոլոր, լո՛ւռ կը դեգերին...
Գետակն անհամբեր կ՚անձկայ վախճանին,
Իսկ ես՝ լեռներու գըրկին մայրական,
Ուր սրտիս համար բիւր հեշտանքներ կան...։

Ո՜հ կ՚ըղձամ, կ՚ըղձամ ըլլալ ես նորէն
— Հովերու ընկեր, լեռներու իշխան,
Մանուկ օրերուս հովիւն յաւերժ չէն
Ու լոկ սըրինգով աշխարհը համայն
Գըրաւել ինծի, ու սիրե՛լ, սիրուի՛լ...

Ըլլալ մարգարէ երկնի ամպերուն,
Խօսիլ ծաղիկին, աղբիւրին լեզուն,
Թռչունէն սորվիլ գաղտնիքը սիրոյ
Ու զայն սիրածիս հծծել ջերմագին,
Աստղերու բերնով, երազի գրկին...

Շաքընէ, 25-7-1931



# ԻՆԾԻ Կ'ԸՍԵՆ

*Ինծի կ'ըսեն.— «Ո՛հ մռայլ ես, մռա՛յլ,*
*Մութ ամպեր յաւերժ՝ ճակտիդ են փարեր.*
*Կեանքի պարտէզէն կ'անցնիս անտարբեր,*
*Դուն քու մէջ լռած եւ միշտ անշառայլ»:*

*— Հոգիս հընոց է, ուր ամէն րոպէ*
*Կեանքը տենդագին՝ խղձեր կը նետէ*
*Կարօտներ զանոնք կ'արծարծեն անվերջ*
*Ու բոցը սիրոյս կը պահէ անշէջ*

*Բազմածաւալ հուրն անչափ տենչանքին*
*Որպէս ուղխօրէն կը խուժէ աշխարհ,*
*Կ'ըղձամ բոլորին տալ եղբայրաբար*
*Համբոյրն անարատ, սիրոյս ջերմագին...*

*Կասկածը մըթին, սակայն իմ հոգին*
*Կ'ընէ թշնամի շուրջիս աշխարհին,*
*Զի բիւր անգամ ա՛հ խաբուած եմ մարդոց*
*Ցաւէտ դըրուժան լեզուէն արտառոց*

*Սիրոյ երազին ծարաւ է հոգիս*
*Լուռ բաղձութիւններ մինչ կ'այրեն արդ զիս*
*Ու դէմքիս վրայ մըշուշի նըման,*
*Կը յամենայ յար ծուխը թախծութեան*

26-5-1932, Փարիզ

# ՄՈՒՐԱՑԻԿ

Կըրծքէս խըլած՝ կարօտավառ սիրտս անտէր,
Ինչպէս քընար զայն ձեռներուս մէջ եմ առեր...
Թափառական աշուղի պէս քայլամոլոր
Ես ման կուգամ քաղաքին մէջ բազմաժըխոր:

Ի՞նչ կ՚որոնեմ, ո՛հ չեմ գիտեր ես այդ մէկին.
Տակաւ կ՚իյնամ թեւերուն մէջ երազանքին
Եւ անանուն բազմալեզու տենչեր նորէն
Գինով հոգիս կ՚առաջնորդեն տարտամօրէն...:

Բայց կ՚ոռոգուի ձանձրոյթներուս հողն անջրդի,
Թախիծներով բեղմնաւորուած իղձով մ՚յուռթի.
Որ անպարփակ՝ սըրտէս ուժգին դուրս կը յորդի...

Եւ մուրացիկ հոգիս սիրոյ ու գեղեցկի
Գալն անձկութեամբ արդ կ՚երկարէ այն կիներուն
Որ Աստղիկի շընորհներով են ակաղձուն...:

5-6-1932



# ՁԱՆՁՐՈՅԹ

Փողոցն անդուլ կ՚արտաշնչէ ծուխ ու փոշի,
Աղմուկն իմ շուրջ կը բարձրանայ գերդ գոլորշի,
Ժըխորին հետ մըշուշի պէս կը թանձրանայ
Եւ հուլօրէն կը տարածուի հոգւոյս վրայ... ։

Հոգէն խոցուած անբուժելի՝ ամբոխն համայն,
Օձի նըման կը գալարուի ինքն իր վրան...
Թակարդուած են իր թեւերուն մէջ ամրափակ
Եւ իր ժահրով կը դիմանան իղձերս համակ...,

Ու դեռ հըլու՝ խոհերուս խօլ քըմայքներուն,
Ամէն իրի մէջ կ՚որոնեմ միտք մ՚անանուն...
Տենչերս անյագ, սակայն, տակաւ կը նըւաղին,
Ներարկումէն ունայնութեան օփիումին։

Ժամերն յանկարծ կը պարտասին իրենց վազքէն
Ու քայլերուս մեղկ ձանձրոյթին թոյնը կ՚ըմպեն.
Իրերն ինձմէ կը հեռանան ատելութեամբ,
Գոյն ու ձեւերն ալ յամրօրէն կը հագնին ամպ...

Ինձ օգնութեան գուր կը կանչեմ լացը մանուկ
Որ հոգիէս վանէ ամէն թոյն ու տաղտուկ,
Եւ կամ խինդը, միշտ յաղթական ու պատանի,
Որ գիս դրկէ երազանքին ծոցը տանի...։

*Մայր ցամաքէն հեռու նետուած կղզի մ'եմ ես…*
*Համայնակուլ քաղաքն անծիր ծովու մը պէս,*
*Խարազանուած՝ քամիներու շունչովն անհուն,*
*Կ'աւազէ յար հունն ապառաժ իմ եզրերուն…:*

2–7–32, Փարիզ



# ԻՆՔՆԱՆԿԱՐ

Հմայաթափ՝ վայրկեաններու վրհուկէն,
Վայրի տենչեր կը մըտրակեն խօլօրէն
Ու կը յանձնեն բազմակարօտ քու հոգին,
Կըրքի կախարդ, մեղըրալեզու դարպասին...:

Մոլորութեանց պարտէզին մէջ ուռճացած՝
Արմատներդ յար կը սողոսկին դէպի ցած...
Ամէն մեղքի կ'ըմպես պարարն հեշտաբոյր
Ու կ'անգոսնես ժամանակի սանձն հանուր...

Խոյանքիդ մէջ աւերումին թոյնը կայ....
Երազանքներդ կ'ասպատակես անխընայ
Եւ խոջայի պատգամներուն սըրբազան,
Դուն կամովին կ'ըլլաս անարգ դաւաճան:

Երբեմն յոյսի ջահերն խըպառ կը մարին
Ու խաւարը կը գըրկէ քեզ լիովին...
Ներաշխարհըդ խռովայոյզ ու վայրի,
Կեանքի ժայռին ընդդէմ անզօր՝ կը փշրի...:

Հոգիդ սակայն, ինքզինք այրող փիւնիկ մ'է.
Բեղմնաւորուած՝ անծանօթ, նոր ուժերէ,
Անկումներէն կը վերածնի յաղթական
Ու միշտ լոյսին կը բարձրանայ անսասան...:

10-12-1932, Շաքընէ

# ՁԱՆՁՐԱԽՏ

Ոչ մէկ դըրդանք չի դարպասեր իմ սրտին·
Երազանքներս կը մահանան յամրագին,
Ծիրաններուն մէջ ձանձրոյթին դիշակեր...

Վաղուց Աստուածն իր գահէն վար եմ առեր
Ու խորտակած՝ հաւատամքիս կուռքը հին,
Կը նետեմ զայն ոտներուն տակ ամբոխին...:

Յոյսերս ոսկի, սիրոյս մատեանն ալ վըսեմ,
Ժամանակի վաճառորդին կը ծախեմ,
Ինձ մատուցուող պատրանքներու փոխարէն:

Ներհակ յոյզեր, միտքս անղեկ՝ կը վարեն...
Վայրկեաններու անդունդին մէջ առկախուած
Ա՛լ չըգիտեմ օդայած եմ թէ կ՚ապրիմ:

Ու տարօրէն, ո՜հ պարտասած ինքնիրմէս,
Զայրոյթիս հոծ բոցերուն մէջ խենթի պէս
Կ՚ուզեմ այրուիլ, կ՚ուզեմ զատուիլ ես ինէ·

Մինչ անանուն կարօտ մ՚հոգւոյս մէջ կ՚երկնէ
Հոյլ մ՚ըղձանքի, որ խելայեղ ու տարտամ,
— Անպարագիծ թեւերովն իր թախծանքի,
Զիս համակող մութին մէջ յար կը հերձի...

16–12–32, Փարիզ

# ԽՂՃԻՄ

Խի՛ղճ իմ, ով ամէնատես, աներեւոյթ դատաւոր,
Մըտածումիս արշալին ու կրքերուս՝ ալ բոլոր·
Այն օրէն որ ճանչցայ քեզ իմ մէջ ու դուն՝ զիս քու մէջ,
Թշնամի ենք իրարու եւ մեր կռիւն՝ անընդմէջ։

Յանձնուեցայ ձեռներու  ես իմ մանուկ օրերուն
Ու կեանքի կոյր քայլերուս խընամակալ եղար դուն.
Ասպետն էի խօլարշաւ՝ երազներուն անսառի.
Դուն զիս ըրած ես հիմա օրէնքներուդ մէջ գերի։

Ստըրկացաւ կամքս ըմբոստ կապանքներուդ ներքեւ բիւր
Ու ցամքեցաւ իմ մէջ մե՛ծ երազանքի մի աղբիւր...
Երբեմն ա՛լ չե՛մ հանդուրժեր խնամութեանդ սաստերուն
Որոնք իղձերս կ՚ընեն յա՛ր տերեւներու պէս չարժուն.

Ու կատաղած վագրի պէս կը յարձակիմ քու վրայ
Կ՚ուզեմ ըզքեզ ընդոտնել եւ յօշոտել անխընայ...
Սարսափահար գրոհէս՝ պահ մը կարծես կ՚անհետիս
Ու խնդութեամբ կ՚արբենայ շղթայազերծ հին հոգիս.

Բայց երբ կրքերն յագենան եւ իյնան գիրկն հանգիստին,
Կամքիդ երկաթ վանդակին մէջ կը փակես զայն կրկին
Ու մորակիդ անողոք հարուածներուն տակ հոգիս
Յուսալըքուած՝ անհաւատ ա՛լ վատաբար կ՚ատէ զիս...

Խե՛ղճ եմ, անտես ոխերիմ, որ կ'սպաննես սիրտս յաւէտ
Կրքերուս մէջ բոցավառ։ յաճախ կ'ընեմ քեզ անհետ
Բայց գերդ փիւնիկ դուն նորէն, մոխիրներէն վերածնած
Կը ցոլացնես գիս քու մէջ ընդմիշտ անլոյծ առեղծուած

1933, Փարիզ



# ԽՌՈՎՔ

Ինչպէս ամպեր թանձրածաւալ, ահարկու,
Կ՚ահաբեկեն երկիրն համայն, կըրքերու
Իրենց անզուսպ կատաղութեամբ մերձակայ,

Ատելութեան հրդեհն այնպէս կ՚սպառնայ
Այրել հոգւոյս երազները բիւրեղեայ....
Ու կեանքս ամբողջ վայրկեանին մէջ կը հեւայ...։

Ամենօրեայ պըրկանքներուս մէջ հազար,
Սրտիս ընկերն իր մոլուցքէն դիւահար
Թունաւորեց սիրոյ աղբիւրն իմ սրտին...

Արդ վիրաւոր՝ գազանի պէս մոլեգին
Կը մըռընջեմ անտառին մէջ ոխերու...
Սէ՛ր կ՚որոնեմ ծարաւ անչափ՝ մարելու։

Փարիզ, 13-5-1933



*
* *

Ինչպէս գինով՝ լըքեր եմ գիս յոյզերու
Անգիտակից այլ տիրական պահանջին...
Ու մըտքիս հետ կ՚հարցաքննեմ անձկագին,
Ինձ հետեւող շուրջիս իրերն անլեզու,

Որոնք ահա, --- եւ անհամար պատկերներ ---
Խոհերուս հետ մըտերմասաց բառ են գըտեր
Ու կը պատմեն իրենց հէքեաթն ոսկեղէն,
Ուր հոգիս է հայելացեր տարօրէն...:

Տեսիլներ գիս խրախճանքի են կանչեր...
Ամենուրեք սէրն ինձ կուտայ հրաւէր
Ու տարիներ կը խոնարհին ջերմագին,
Կուռքին առջեւ երազաբեր վայրկեանին:

Բայց շըրջմոլիկ, մըթին յոյզեր գիս նորէն
Կ՚առնեն իրենց դարպասին մէջ քըմածին
Ու մերթ լոյսի դաշտերուն մէջ կը տանին,
Մերթ ալ վիհի մ՚եզերքէն վար կ՚առկախեն...

1-2-33, Փարիզ



# ԱՆԾԱՆՕԹ ԿԱՆՉ

Չը գիտեմ, ո՛վ է, որ ամէն գիշեր,
Խաւար մ՚անթափանց երբ հողն է գրկեր,
Կը կանչէ հոգիս ձայնով մ՚անձկագին
Բընութեան լըռին, միսթիք խորհուրդին:

Եւ կարծես գիտակ՝ իմ կարօտանքին,
Քայլերս՝ ակամայ գիս յար կը տանին
Խաւարի կրկնակ փէշերուն ներքեւ
Վայրերն, որ երբեք չեն տեսեր արեւ...

Խորը կ՚ըլլամ ես միշտ թանձր անտառին,
Ու կ՚ըմպեմ անյագ սարսուռն հեշտագին,
Մութի ոգիին... եւ զուր կ՚որոնեմ
Մանկութիւնս հունող վախերն հակընդդէմ...:

Կէս գիշերային պտոյտի պահն է.
Յոյզերով տարտամ սիրտս կը յառնէ
Ու երազամոլ զերդ քընաշրջիկ,
Խոհերուս վիհերն կ՚անցնին հպանցիկ:

14-2-1933, Շաթըլնէ



# ՕՏԱՐՈՒԹԻՒՆ

Թշուառութեան մշուշին մէջ է ծներ մայրս ինծի,
Ու փաթթեր է դժկանքի խանձարուրովն իմ օրեր,
Բայց իր սիրոյ մշտահոս աղբիւրն հոգւոյս է բացեր
Որն ես անվերջ կը բաշխեմ ծարաւ ամէն անցորդի:

Ոսկորներս են զօրացեր, միտքս իր թեւերն է առեր
Մայր բնութեան շռայլած անանձնական շնորհէն
Մարդիկն համայն կը սիրեմ գիտակցութեան լոյսերէն
Մտածումներս այլասէր՝ երբոր վառած չէին դեռ:

Ամենուրեք կը գտնեն, սակայն անոնք երեսիս
Ինչպէս ապտակ մ'ոխալից «օտարական» բառն
...Եւ կ'արձակեն մախանքի նետերն իրենց ոճրածին...

Ինչպէս ցեխի, զարշութեան անշնչելի հոսանքներ
Կ'ապականեն նենգօրէն բուրաստան մը սիրաբեր,
Օտարութեան շունչն այնպէս կը պղծէ արդ իմ հոգին...

1933 Յուլիս, Փարիզ



* * *

Բացուի՛ր հոգիս, բացուի՛ր, բացուիր արեւին·
Նետէ վըշտերդ երէկին ծոցն ա՛լ մըթին,
Փշրէ խըղճիդ, մըտքիդ կապերն հընօրեայ
Ու թո՛ղ նաւակդ հոսանքին մէ՛ջը ներկայ...:

Թող վայրկեաններ գրկեն յաւերժն ու սուրան
Կեանքի բոլոր ճամբաներէն՝ անկայան —
Ա՜հ չե՞ս տեսներ, խոհեմութիւնդ ընդերկա՛ր,
Ուժի տենչերդ կ'ըստրկացնէ յամրաբար:

Երազանքով մի՛ շըղթայեր դուն զքեզ,
Կը մանգաղէ, զի ժամանակն անվերջ՝ տե՛ս,
Բազմաբուրեան, բողբոջ վարդերն հուր սիրոյդ
Ու փոխարէն կը բերէ քե՛զ լոկ ճանճրոյթ...:

Թո՛ղ առօրեան միայն ըլլայ հըպատակ,
Խըմէ բաժակն անցնող պահին՝ մինչ յատակ,
Ու մանկան պէս միշտ զմայլէ իրերուն,
Թող աչքերէդ հոսի կեանքին յոյզն անհուն:

Բացուի՛ր հոգիս, բացուի՛ր, բացուիր արեւին·
Լըքէ վըշտերդ երէկին ծոցն ալ՝ մըթին
Փշրէ խըղճիդ, մըտքիդ կապերն հընօրեայ
Ու թող նաւակդ հոսանքի մէջը ներկայ...:

Շաթընէ, 17-6-1933

# ԵՐԿՄՏԱՆՔ

*Օձի նըման կը խայթէ զիս անդադար մի կասկած.*
*Մըտածումներն՝ անհամար, մեղկութեան մէջ են լքուած*
*Կամքն ստրուկ մ'է քըմայքին... երկու տենչեր կ'ոգորին*
*Ջըղագրգիռ, անհամբեր պայքարին մէջ իմ ներքին:*

*Ուժերն են միշտ հաւասար այս խօլական տագնապին.*
*Կռիւն անվերջ կ'արծարծի, յաղթանակն է դժուարին.*
*Զայրոյթներով հրդեհուած ատելութիւն մ'ալ իմ մէջ*
*Կը բորբոքի տարօրէն ու կ'այրէ զիս անընդմէջ...*

*Ընդմիջելու անկարող հանդիսատես մը ներկայ,*
*Սպասումէն յափրացած ձանձրոյթի գիրկը կ'իյնայ...*
*Այդ հոգիս է, ընթերցող, զոր ուզեցի քեզի տալ*
*Զի տառապանքս այն է լոկ որ ես զայն չեմ ճանչնար ալ...*

20-8-1933, Փարիզ



# ԱՂՕԹՔ

Տիեզերակա՛ն, անիմանա՛լի
Անխօս զօրութիւն, Աստուած անյեղլի,
Լոյս տուր թախծապատ ու մըռայլ հոգւոյս,
Տուր դաշնակութիւն իմ մըտքին քաոս...

Կոյր ուժեր իմ մէջ կը յօշոտեն զիս,
Վայրի, սովատանջ գազաններու պէս,
Մինչ ժամերէն ժանգն յամրօրէն կ՚իյնայ
Սըրտիս բազմայոյզ լարերուն վրայ...

Մինակ եմ ահա գիշերին հետ լուռ...
Աստղերն անհամար, լուսինը մաքուր,
Ալ չեն պատմեր ինծի ոսկի հէքիաթներ.
Զեփիւռի գաղտնիքն, ա՜հ մոռցեր եմ տէ՛ր:

Աշխարհի բոլոր կիրքերը մոլոր
Կ՚արշաւեն հոգւոյս վրայ անդադար...
Կեանքէն հալածուած, հաւատքէ զրկուած՝
Քեզ ամենուրեք կ՚որոնեմ Աստուած:

Կ՚ուզեմ մանկանալ, կոյս սրտով քեզ հետ
Հաղորդուիլ նորէն, քեզ պաշտել յաւէտ,
Արդ լըւա մեղքերս բոցերովդ անշէջ...
Թող սէրդ հոգւոյս խորն հոսի անընդմէջ:

10-3-33

# ՎԱԶՔ

*Մրրկավար՝ ինչպէս նժոյգ մը վայրի,*
*Հոգիս դժգոհ՝ կարօտավառ յաւիտեան՝*
*Տենչէ ի տենչ կը սլանայ անկայան.*
*Աչքերուն մէջ սիրոյ հրդեհն յար կ'այրի։*

*Հեռու բոլոր ճամբաներէն հասարակ*
*Ան մըտեր է ուղին մոլոր ու փըշոտ*
*Ու՝ կ'արշաւէ դէպ իր երազն անծանօթ*
*Որոնելով կեանքի խորհուրդն անյատակ։*

*Պայքարին մէջ՝ խաւարին դէմ առօրեայ,*
*Երբեմն յոգնած՝ կ'իյնայ դարպասն ունայնին*
*Եւ իր իղձերն մահուան բոյրով կ'ըզգլխին...*

*Բայց կազդուրուած կարծես նոյն այդ ունայնէն,*
*Կը վերածնի յոյսէն շարժումն համօրէն*
*Ու դէպ անհուն՝ հոգիս միշտ թեւ կը բանայ...։*

21-10-33, Ալփօրվիլ



# ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ

Ուրախութիւն լուսերես, վաղուց է չեմ տեսեր քեզ...
Մըտերիմ է հոգն ինծի, Թախիծն յար կախ է դէմքիս.
Ջուր կը դարձնեմ օրերուն ապրուած էջերը բոլոր,
Կորսուեր է հետքդ աստղ իմ անցեալին հետ մոլոր:

Մըտածումին անողոք ափերուն մէջ մի առ մի,
Ամփոփուած են խնդութեան խոյանքներըս վաղեմի...
Տառապանքին առօրեայ, զաւակն եմ ալ ընտանի,
Ձեռքըս ձեռքին մէջ, Ան զիս ամէն բախտի կը տանի...:

Սակայն հոգւոյս խորերէն յիշատակի մը պէս հին,
Կը վերածնիս մերթ յանկարծ ու կը յառնես դուն ուժգին...
Երանութեան հոսանքներ կուգան Պահին ընդմէջէն
Ու բեղմնաւոր յոյսերով զիս կը լեցնեն, կ'ողողեն:

Այցելութեանդ շնորհով կը մաքրանամ հոգերէս
Եւ հայելիին մէջ կեանքին դարձեալ կ'ըլլամ մանկան պէս...
Երախտապարտ եմ քեզի, որ միշտ անմար ես իմ մէջ,
Ինչպէս աշխարհն հոլովող ստեղծագործ հուրն անշէջ:

Փարիզ, 19-11-1933



# ԳԻՇԵՐԱՅԻՆ ՊԱՀ

Մորփէոսէն խռոված՝ յանձնուեր եմ բնութեան
Բալասանող, հոգածու գրգուանքներուն մայրական.
Անկերպարան պատկերներն իմ խոհերուն երերուն,
Կ՚այլափոխուին, կ՚անձնանան տակաւ շունչովն իր սիրոյն...

Խաղաղութեան համասփիւռ, գինովութիւն հեշտագին
Կ՚ողջագուրուին խաւարին մըտածումներն անմեկին...
Աստղերն ամբո՛ղջ կը վառին, լուսինն արծաթ՝ զերթ հայլի
Տնկարանի լճակին ջուրերուն մէջ կը փայլի:

Խնձորենիք, տանձենիք, նըշենիներ հարսնեւոր
Ու բիւրանուն ծաղիկներ, բուրաստանին մէջ օրօր՝
Իրենց հոգին հոտեւան կը նուիրեն հովերուն...
Շրջապատն է լո՛ւռ տաճար՝ խունկ, աղօթքով պարարուն:

Սոխակ մ՚անվերջ կը քամէ սիրտն իր՝ սրտիս հանդիման...
Պարտէզին մէջ ծըղրիթներ, գորտեր դաշներգ մը կուտան.
Յօղը տակաւ կ՚ընդգրկէ գաղջ սարսուռները յետին.
Պահեր ցրտին կը տանին գիշերն այգի համբոյրին:

Հոգիս մանկան մը նման դիւթանքի մէջ է սուզուեր
Ի տես վառուող աստղերուն, գինով՝ գողէն սիրաբեր.
Գարնան անանց գրգանքին, որ ծառերուն, խոտերուն,
Ծաղիկներուն սրտէն ներս կ՚անցնէ աւիշն արեւուն...:

*Կ'իյնան մտքէս սահմանեալ պատգամները գիտութեան,*
*Կ'իյնայ սրտէս գրքերուն թաւահիւս կեանքն ալ համայն*
*Եւ հոգիս արդ մաքրացած՝ կ'երկրպագէ բընութեան*
*Զգայախօս նիւթերու խորհուրդներուն անսահման...:*

Շաքըլնէ, մայիս 1933



# ՄՈՒՍԱՅԻՍ

Մանուկ օրերէն ես քեզ սիրեցի,
Դու փայփայեցիր երազներս ոսկի,
Թեւերուդ վրան առիր խղճ–հոգիս...
Ուզեցիր միշտ վեր, վե՛ր բարձրացնել զիս:

Սակայն ես ըմբոստ, անառակ ու խեւ՝
Սուրբ պատգամներուդ եղայ անտարբեր.
Երբ մտայ կեանքի տօնավաճառն ես,
Ո՛հ, նոյնիսկ յաճախ անարգեցի քեզ:

Լոկ րոպէն ապրիլ տենչացի հանուր
Ու կեանքին բացի մի նոր առագաստ...:
Բայց անշահ եղայ ես այդ վաճառքէն,
Եւ ամենուրեք, մարդիկ, բրտօրէն,

Հեգնեցին մտքիս զարմանքներն արդար
Ըսին... կեանքն իրաւ ապրելու համար,
Հարկ է սողոսկիլ, ճըկիլ շարունակ.
Հոգին կեղծիքով պատել մինչ յատակ:

Բայց սարսափահար՝ մերժեցի ես այդ,
Հոգւոյս ընծայուած խորհուրդներն յայտատ,
Ու երբ ոխիս հետ մնացի փակուած,
Օրերս եղան լոկ հոգի առեղծուած....:

Մերթ գրկանքն ու մերթ ձանձրոյթը մըթին
Սիրտս ունայնութեան գիրկը նետեցին.
Մահուան մէջ, սակայն, դարձած ես զգաստ
Ու կեանքի բացի մի նոր աստղաստ...:

Հոգիս խորան մ՚էր երազի, իղձի,
Ուր ես ամէնուն սէ՛ր տալ ուզեցի.
Մինչ այդ՝ հրդեհուած անտառ մ՚է վայրի
Եւ ատելութեանց մէջ սէրըս կ՚այրի...:

Մուսա՛ս, ո՛վ մուսաս, դու սրտիս Աստուած,
Կեանքի եւ հոգի ցաւէն հալածուած՝
Ներէ որ յաճախ ամբարիշտի պէս
Կրքերուս ներքեւ ես պղծեցի քեզ:

Ներէ՛, դաւաճան՝ խղճահար հոգւոյս,
Տուր իմաստութի՛ւն, շնորհ բառերուս,
Որ բեղմնաւորուին երգերն իմ բոլոր,
Կուռ, վաստակի երկունքով հըզօր...:

1933 դեկտեմբեր, Փարիզ



# ՁՕՆ ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻՆ

*Համեստ, խոնարհ ու երկչոտ անձերու պէս կը քալեն*
*Ամբոխին մէջ մըտածման, բառերն իղձիդ եռեւէն*
*Կը հետեւիմ ես անոնց հետաքրքիր, ակընդէտ,*
*Ու կը գտնեմ միտքս յանկարծ մտքիդ սեմին լուսաւէտ.*

*Երբոր կ՚ըղձամ քեզ ճանչնալ, զգալ յոյզերդ այլազան,*
*Պատկերներով պարզ ու հեզ կը բացատրես մեղմաձայն*
*Մտքիս, սրտիս յարաճուն ինչուները ծարաւի...*
*Եւ Սոկրատի մաքրափայլ հոգին քու մէջ կ՚երեւի:*

*Մերթ խանդավառ, մերթ երկմիտ զարմանքներով պաշարուած՝*
*Ինձ կը թըւիս դուն յաճախ անլուծելի առեղծուած,*
*Բայց երբ ըզքեզ կը պեղեմ, դուն միշտ մանկան ես նըման*
*Որ Աստուծոյ մ՚է յանձներ իմաստն իր մարդ էութեան...*

*Դու խորիմաց մարգարէ՝ փորձառութեամբ ներդաշնակ*
*Կը կարեկցիս մարդերու երազանքին անպարփակ,*
*Որ անհունին տիրանալ կը յաւակնի յաւիտեան,*
*Բայց երբ լըքւիս դուն քեզմէ, կարօտ ես այդ խենթութեան:*

*Տարիներուն անողոք ձեռներն ինչ փոյթ թէ դրկեն,*
*Ունայնութեան անդորրին տանին մարմինդ յամրօրէն...*
*Դարու ժըլատ, հեստ ոգին գլխիդ դրեր է դափնին*
*Ու կը յանձնէ վաստակներդ անմահութեան տաճարին...*

Յուն.–փետր. 1934, Փարիզ

## ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ

Ո՛վ ուրախութիւն, դու շունչ հոգեթով,
Երբոր կը բղխիս, վիշտ ու զրկանքով
Ու տառապանքով յղի սրտերէն,
Քաղցր ու բեղուն է գրգանքդ ուղխօրէն:

Դէմքերուն վրայ զերդ լուսէ համբոյր,
Մերթ կը տարածես երազանք մը լուռ,
Մերթ աչքերուն մէջ ինչպէս անշէջ հուր
Կը վառես կեանքին կարօտները բիւր:

Նման ես դուն ջինջ աղբիւրներուն այն,
Որոնք լեռներու արգանդէն կուգան...
Եւ փրփրեւ գարնան երակները յոյր,
Իրենց վազքին մէջ կեանք կուտան հանուր:

Արգասաւորուած՝ ձմրան տարփանքով,
Սիրուած՝ արեւի համբոյրէն գինով,
Մերթ ովասիսն ես, ծնած աւազէն,
Ուր բիւր խոնջէնքներ քեզ կ՚օրհնաբանեն:

Ո՛վ ուրախութիւն, դու լոյս անպարփակ,
Դուն աղբիւր յուռթի, սրբազան կրակ,
Զերդ արեգակի կենսատու շառայլ,
Անպակաս եղիր սրտերէն մռայլ...:

## ՆԿԱՐԻՉ ԱՆԳԼՈՒՀԻՆ

Սիրավառ աղջիկ, խարտեաշ Անգլուհի,
Այտերդ շիկներ են գարնան համբոյրէն
Ու խորն աչքերուդ բաղձանք մ'հեշտօրէն
Ծոցը պահերուն անդարձ կը սահի...:

Օդէն, արեւէն անփոյթ օրերէն
Ստացած կեանքի հոսանքն անսահման
Դուն մատաղ հասակ մըտրուկի նման
Կ'ոստնուս, կը խայտաս ըղձալի ու շէն:

Զուր կ'երկրպագես արուեստի կուռքին
Կը հայցես անկէ շընորհի ուղին՝
Մտքիդ ու սրտիդ ծարաւին համար:

Մինչ դուն արուեստի հողն ես բարեբեր,
Ուսկից կը բղխին զերդ ջինջ աղբիւրներ
Կեանքի գաղտնիքին ակերն անհամար:

14–5–1934, Փարիզ



## ԶՐԿԱՆՔԸ

Բարեկամներ երբեմն ինծի կը հարցնեն.
— Ինչպէ՞ս կ՚ապրիս ու միշտ հոգւոյդ խորերէն
Կ՚ըղձաս ուժ տալ յուսալքուած սրտերուն,
Մինչդեռ զրկեալ՝ ու նօթի ես յաճախ դուն:

— Երբ քաղաքի փողոցներուն մէջ Թափառ՝
Թշուառութեան ու զրկանքին անհամար
Հառաչանքներն ու բողոքներն անընդմէջ,
Աչքերովս կը հաւաքեմ հոգւոյս մէջ.

Ես զանոնք իմ տառապանքին կը խառնեմ,
Կը պատրաստեմ, ատելութեան թոյներով,
Մի բարկ չիճուկ, որ կը հոսի դերդ արիւն
Մարմնոյս, հոգւոյս երակներուն մէջ համբուն:

Գուցէ հեղուկն այս անսովոր թըւի ձեզ
Սակայն ան զիս կ՚ոգեւորէ վագրի պէս...
Ատամներս ու բռունցքներս սեղմ՝ ուժգին,
Երբոր կ՚անցնիմ փողոցներէն քաղաքին:

Մարդիկ յաճախ զիս կը կարծեն խենթ գինով.
Մինչ երազանքի մ՚յոյզերով
Պաշարուած են մտածումներս ինքնահոլով,
Ու ես կ՚երթամ յաղթանակին հաւատքով:

30–6-1934, Փարիզ

* * *

Թախիծը սրտիս նստեր է աշնան
Մելամաղձոտ, լո՛ւռ երկընքին նըման.
Տերեւաթափն է կարծես իմ հոգւոյս
Ու տենչերս անյոյս կ՚իյնան ոտքերուս:

Պահ մը կը սոսկամ ունայնի ձայնէն,
Կուրծքէս սիրտս ընդհուպ կ՚առնեմ խօլօրէն,
Կը դընեմ մըտքիս նըժարին վրան
Ու կեանքին ձեռքով կը կըշռեմ ես զայն...

Վայրկեանի անտես ձեռքն է դաւաճան,
Հոգի, տաղտուկի ամպերն են միայն,
Որ պարուրեր են ժըպիտն իմ կեանքին:

Հարկ է ոտնակոխ ընել անընդհատ,
Մութ րոպէներու դարպասը վըհատ,
Եւ յոյսով զինուած՝ դիմել յար լոյսին...

14–8-1934



*
* *

Ալ երազանքի, ոսկի բաղձանքի օրերս անցեր են·
Կ՚ընկղմին մէկ մէկ կեանքի փոթորկոտ ծովուն մէջ արդէն
Մանկութիւնս անփոյթ, արեւանըման՝ խինդերս պատանի,
Աղմուկն հիմա զիս այլ հորիզոններ կ՚առնէ կը տանի...։

Ո՛վ խիղճ վաղեմի, դուն որ իմ դաժան դատաւորս էիր·
Սանձ էիր դըրեր սրտիս նըժոյգի բերնին ըղձալից,
Եւ դուն ո՛վ Հոգիս, դուն որուն միտքը գերին էր դարձեր
Քե՛զ, որ յաւիտեան կ՚երգեմ աշխարհին առաջ անտարբեր,

Խիղճըս եւ Հոգի՛ս, կեանքին առօրեայ հընոցին մէջ վառ,
Իբրեւ հընացած իրեր կ՚ուզեմ ձեզ այրել խօլաբար...
Զի չա՛տ սիրեցի ձեր քըմայքներուն ծարաւն ես անյագ
Կ՚ուզեմ խարանել ձեզ այդ տանջանքին հուրով
Ու ձեր թոքերուն տա՛լ գիտակցութեան լայն շունչն անխըռով։

21-8-34, Փարիզ



## ՀՈԳՍԸ

Իմ ամենասերտ եւ ամենահին
Ընկերներէս մին է Հոգսը կեանքին,
Ե՞րբ եմ զայն ճանչցեր, ես այդ չեմ յիշեր.
Կ'ըսեն թէ նա իմ դայեակս է եղեր...,

Մանուկ օրերէս եւ մինչեւ այսօր,
Շատ ընկերներ եմ ճանչցեր ամենուր.
Բայց խելառ վազքին մէջ ժամանակի,
Անդարձ լքեր եմ զանոնք մի առ մի...։

Հոգսն է միայն որ, իբրեւ մտերիմ
Ապրեր է կողքիս միշտ հաւատարիմ...
Եւ կեանքի բոլոր ուղիներուն մէջ,
Ինձ խնամակալ եղեր է անվերջ։

Ազատութեան մեծ երազովն արբած,
Երբ ուզեր եմ ես բացուիլ առ Աստուած...
Սլանալ երկինք, արեւն ողջունել...
Խնդութեան երգով Իղձ ու Սէր տօնել,

Հոգսը թախիծ է ներարկեր սրտիս,
Հոգսը բանտարկեալ ըրեր է յար զիս.
Ան իմ բարեկամս, եւ... թշնամիս է.
Ան զիս մտրակով սիրով կը կրթէ...

Հազար դառնութիւն եւ հազար զրկանք
Տըւեր եմ կեանքին ես իբրեւ փրկանք,
Որ Հոգսի փոխան ինձ խնդութիւն տայ,
Բայց կեանքն ինծի լոկ Հաւատք, Յոյս կուտայ...։

Իմ ամենասերտ եւ ամենահին
Ընկերներէս մին է Հոգսը կեանքին,
Ե՞րբ եմ զայն ճանչցեր, ես այդ չեմ յիշեր,
Կ՚ըսեն թէ նա իմ դայեակս է եղեր...։

Փարիզ, սեպտ. 1935



# ՍԻՐԵՐԳ

Ամելիային

*Գանկիս ներքեւ հազար յուշեր կան երէկէն,*
*Ու բիւր խոհեր ամէն րոպէ կուտայ ներկան.*
*Հազար երգի, հազար գոյնի աստուածօրէն*
*Կը խորասուզիմ ես գաղտնիքին ամէն վայրկեան:*

*Հազար երգէն մէկն ես սրտիս,*
*Հազար խոհէն մէկը միայն,*
*Ամէն ուղի, ինչո՞ւ սակայն*
*Քե՛զ կը տանի ակամայ զիս:*

*Ես փշրեցի մտածումիս մուրճին ներքեւ,*
*Հոգիս գերող սիրոյ կուռքին պաշտումն անհուն*
*Եւ յուսացի, կաշկանդումէ զերծ արդարեւ,*
*Թէ պիտ՝ կրնա՞մ ղեկը կամքիս ուղղել, հեռուն...*

*Ստիպեցի սրտիս, թիթեռ*
*Հիռ գալ շուրջը ծաղիկներուն*
*Սակայն ի զո՜ւր, նա մոլորուն,*
*Սիրոյ բոցին բոլորն է դեռ:*

Օգոստոս 1930, Փարիզ



# ԿԵԱՆՔԻՍ ԵՐԳԸ

Հոգիս բուրվառ է մշտավառ, ուր կը ծխան սէրերս համայն,
Կը խնկարկեմ ես զայն կեանքի տաճարին մէջ յաւերժական,
Բազմահազար հաւատացեալ ամբոխներու երեսն ի վեր
Ու կը ժողվեմ անոնց դէմքէն հաւատամքի լոյսեր տարբեր...:

Մանուկներու մըշտադալար ու զովաշունչ շրթունքներէն,
Բազմալեզու սիրոյ մատեանն ես կը կարդամ անյագօրէն...
Եւ աչքերէն, որ կը հոսին զարմանքի ջինջ աղբիւրներ յար,
Կ'ըմպեմ կեանքի երազանքին ու հէքիաթին յոյզը պայծառ...:

Լուսածնունդ խինդը կ'առնեմ պատանի խենթ հոգիներէն.
Մերթ յուսախաբ, սեւ վըշտին հետ կը շաղախեմ զայն կուրօրէն...
Բայց իրենց պէս մըշտանորոգ, ինքնահոլով, կ'ընդոտնեմ ես
Ժամանակէն ինձ արձակուած Հոգւի Թունոտ նետերն անտես...:

Երիտասարդ եւ ինքնակալ գլուխներու Յոյս-Հաւատքին,
Անոնց ազատ շարժուձեւին, սէգ նայուածքին կ'արենակցիմ
Մարմնոյս, հոգւոյս ներհոս կրքերն երբեմն սին ու մերթ վըսեմ,
Աշխարհակերտ շարժումն ՈՒԺԻՆ, ես անոնց հետ կը հոլովեմ...:

Երբոր աչքերս խորասուզին աչքերուն մէջ վառ կոյսերուն,
Որոնց Աստղիկն առատաձեռն շնորհեր է գեղ ու գարուն...
Երբ կը շնչեմ անոնց հասուն գոյներն ու գաղջ բոյրն իգութեան,
Երակներէս կ'անցնի բաղձանքն ստեղծագործ աստուածութեան...

Երբ կը դիտեմ այն ճակատներն, որ ծերութեամբ են ակօսուած,
Աչքերն, ուր կայ լոյսի նահանջ եւ օրհասի խայթող կասկած,
Ես ակամայ կ՚ընտելանամ ունայնութեան դաժան դէմքին...
Ու անձկութեամբ, ագահութեամբ արդ կը կառչիմ անցնող պահին:

Ամէն մի մարդ կեանքի գրքին չը կարդացուած էջն ինձ համար,
Չարն ու բարին ամենուրեք ուսման ակեր են հաւասար...
Հոգիս կ՚ըղձայ մեղուն դառնալ բնութեան մէջ անանձնական...
Ծաղիկներուն մեղրը ծծել, եւ զայն յաւէտ տալ Մարդկութեան:

1935, Փարիզ



* * *

*Աղբիւրի գողն արծաթուած*
*Լուսնի տեսքին է նման*
*Աղջիկն այն վառ աննման,*
*Որ հոգիէս մարմնացած՝*
*Կը խուսափի անկէ յար…*

*Կը հմայուիմ մերթ ծովէն,*
*Իր աչքերուն ի խնդիր,*
*Մերթ աստղերուն ծնրադիր,*
*Կը հայցեմ ես ջերմօրէն*
*Պատկերն իմ խօլ երազին…*

*Բնութեան մէջ թափառուն,*
*Հարցատուն եմ անձկագին,*
*Ջուրին, ծառին, ծաղիկին*
*Ու մտերիմ թռչուններուն,*
*Իր մոգական անունին…*

*Գիշերային խաւարին,*
*Նոյնիսկ հովին գաղտնաբեր՝*
*Կը պաղատիմ անհամբեր…*
*Ու կ՚սպասեմ յուսավառ՝*
*բաղձանքներուս դիցուհին…:*

Փարիզ, 1931

*
* *

Սէրս կ՚երգեմ փողոցի
Ինձ անծանօթ այն աղջիկին,
Որուն ցոլքը գերդ հայելի,
Կ՚իյնայ սրտիս ջինջ լճակին:

... Այլ դուն անտարբեր քու հմայքներուն,
Երբ ընկողմանիս կողերդ պարմանի
Ու սատափ կրծքիդ հեշտանքն ինձ տանի,
Մարմնիդ հաշիշին տենչանք կմ անհուն:

Լանջերդ խզօրէն երբ քեզ օրօրեն,
Քայլերդ տարփանքի բուռն հրաւէրին.
Գիծերն իրանիդ — կեցուածք արուեստի,
Աստղիկը՝ չուայլ ձօներ է քեզի.

Աչերուդ մէջ հուր՝ թշերդ են կարծես նուռ
Շրթներդ անձկալիր, կարօտ՝ համբոյրի,
Ծըպտէդ սիրոյ գինին կը ծորի...
Ո՛հ, դէմքդ խօսուն հայելի մ՚է ուր

Հոգիդ սիրակէզ հոգւոյս կը բացուի...
Իմ երազ աղջի՛կ, քերթուած կենդանի,
Որչափ անհուն ես, որչափ բազմայոյզ,
Գոյներդ երբ հասուն՝ բոյրերդ են դեռ կոյս:

18-3-31, Փարիզ

# ՆԿԱՐ

Օր. Հ. Լ.ի

Հողին հակած, կորաքամակ ամբոխն համայն,
Ցրտասարսուռ ու երկիւղած կը դիտէ զայն...
Ստուերի պէս թեթեւաքայլ ու գողունի,
Տժգոյն աղջիկ մ'է որ կ'անցնի...

Իրանը մեղկ, նոճի նըման, դեռ պարմանի,
Ցանձնած անփոյթ՝ իր քայլերու պերճ նազանքին,
Հոգին կարծես աղօթքի մէջ պաղատագին,
Ինքն իր մէջ լոյծ՝ ... ուրուականի կը նըմանի:

Քուներն ի վար մինչեւ ուսերն կը սողոսկի
Իր ծամերուն օձապտոյտ հիւսկէնն ոսկի,
Աչերն աղու՝ սիրոյ երկու աղբիւրներ են,
Որ երազին մէջ կը հոսին յաւերժօրէն...:

Բայց կրծքին տակ մահը դաժան կը ծիծաղի
Ու դէմքն երբեմն կ'ընէ հայլի մը թախծանքի,
Մինչ կեանքն իզուր իր համբոյրով կ'ուզէ տալ դեռ
Շրթներուն դող ու թըշերուն կարմիր վարդեր...:

Ո՜հ յամրօրէն, հովին տրուած մոմի նըման
Կը մարմըրի աչքերուն մէջ լոյսն անսահման
Ու մահաթոյր քօղ մ'համօրէն կ'իյնայ դէմքին...
Բայց խորասոյզ՝ տեսիլներու մէջ անմեկին,

*Պարմանուհին այդ քրմուհի մըն է կարծես,*
*Նրբախորհուրդ, յաւերժալուռ՝ Սֆինքսին պէս*
*Տիեզերքի անլոյծ բանին մըտասեւեռ,*
*Ան կը դիտէ ժամանակի խաղն անտարբեր...։*

11-11-31, Փարիզ



# ԿԱՐՕՏ

Օր· Ա· Ս·ին

Երբ երկնային ստուերներն իջնան
Ու մութը տակաւ, առնէ մայրական
Գիրկին մէջ համայն կեանքը պարտասուն,
Հեռաւոր աղջիկ, ըղձանք բազմադոյն,

Որպէս տառապած եւ հալածական,
Ես անապատի ճամբորդ անկայան,
Միշտ քեզի կ՚անձկամ, դու կը կանչես զիս
Ինչպէս զովաշունչ բարի ովասիս...։

Գարնան գիշերներ, լուսնակին ընկեր·
Լո՛ւռ, գաղտագո՛ղի, երբ ման գամ երեր,
Ու բուրաստանէն վարդերն հոգեւան,
Առուակն օրօրուն, սոխակն երգահան,

Զեփիւռն հաճոյիկ իր մեղմ գգուանքով·
Դեռ հազա՛ր գաղտնի ձայներ հոգեթով
Երբ լո՛ւռ հրծծեն ինձ իրենց գաղտնիքներ
Ես կը զգամ թէ կողքիս·ես կայներ...

Խոհերու անվերջ ըղկումին յանձնուած,
Երբ միտքս ու հոգիս ըլլան անաստուած,
Ու լքուած յոյսէն, լքուած հաւատքէն՝
Մենութեան պահերն ինձ թոյն մատուցեն,

*Հեռաւո՛ր աղջիկ, դիւթական երազ…*
*Դուն հոգւոյս հըսկող բարի քոյր կ'ըլլաս*
*Ու սիրոյդ շունչով ուժերս մոլեգին՝*
*Կը զարթնին տակաւ, կը փարին կեանքին…*

28–5–33, Շաքընէ



# ՊԱՏԿԵՐ

Ընկերուհի Գրիգորեանին

*Աչերդ անհանդարտ, աչերդ անհամբեր,*
*— Հոգիդ ցոլացնող երկու հայլիներ,*
*Երբ շարժին գինով ու մերթ երազուն*
*Ու մըտամոլոր նային երեկուն,*

*Հովերէ ծեծուած ծովը կը յիշեմ.*
*Մըրրիկն անցեր է..., արեւն հրադէմ*
*Թէեւ բնութեան կապդոյր է տըւեր*
*Բայց փոթորկահար ջըրերն են դեռ խեռ:*

*Դեռ եզերքին դէմ կըքերն են եռուն,*
*Որ քամիներու մըտրակէն սարսուռն՝*
*Խելայեղ տենչով փըշրել են ուզեր*
*Զիրենք շղթայող թումբերն յաղթաժեռ...*

*Այլ իբրեւ մշուշ, արեւի շունչէն*
*Ծովու պաստառէն կ'ելլէ յամրօրէն,*
*Բաղձանք մ'անծանօթ երազով օծուն*
*Որն իր հըմայքով կ'ընդգրկէ հեռուն...:*

28–2–34, Փարիզ

*
* *

Օր. Ժ. Իճ

Դէմքդ խոհերու շըղարշն երբ հագնի
Ու գլուխդ հակի երազին ոսկի...
Զեփիւռն ըղձալիր, մազերդ երբ խառնէ
Ու շրջագեստիդ փէշերն համբուրէ.

Դուն այն վարդենի Թուփին ես հանգոյն
Որ Արշալոյսի տարփանքով դեռ քուն՝
Եղեամով օծուն հոգին բուրաւէտ
Կուտայ շրջասփիւռ եթերին յաւէտ...:

Ու երբ կը հոսին աչերդ երերուն,
Նայուածքդ աղբիւր մ'է սիրով ակաղձուն,
Որ կը բաշխէ կեանք, կը բաշխէ բերկրանք
Ով անոր յանձնէ ծարաւ ու տաժանք:

Մեղուն ժրաջան, ինչպէս անձկօրէն,
Իր մեղրը կ'առնէ ծաղկանց բաժակէն,
Հիւթեղ շրթներուդ ժըպիտն հեշտագին
Այնպէս կ'առինքնէ բաղձանքն իմ սրտին:

Գարնան արեւի շողերէն յղի՝
Նորածին առուի վազքին յղի՝
Ծիծաղը դէմքիդ վրայ պարմանի,
Երբ սրտէդ կուգայ ու պահին կ'անցնի...:

*Առուակն յոյզերուն որ քեզմէ ինծի,*
*Հոգւոյս պուրակին մէջը կը հոսի,*
*Բիւր նըկարագեղ վայրերէ կ՚անցնի*
*Դեռ հազարանուն երգերով է լի…:*

6-4-1934, Փարիզ



* * *

Օր. Լ. Խ.

*Ինչպէս տարփանքն անձրեւին կը թափանցէ սխրագին*
*Ամրան տօթէն պարտասած հողի ծարաւ արգանդին,*
*Կ'ըմպէ երաշտն հեղձուցիչ ու կը ջամբէ յղութիւն*
*Կենդանութեան բերկրութիւն արեւակէզ բոյսերուն,*

*Իմ առօրեայ հոգերուն, թախծոտ ու լուռ պահերուն*
*Ատելավառ պայքարըն յար պղծուած իմ հոգւոյն*
*Ծակտիկներուն մէջ այնպէս յուլօրէն կը խորսուզի,*
*Մըտածումիս ձեռակերտ պատկերդ՝ աղբիւր երազի...*

*Ինչպէս բուրմունք մ'ըղձըլլիչ՝ համայնասփիւռ գրգանքով*
*Կ'առնէ հոգին դիւրառոյգ իր գարպասին մէջ գինով,*
*Ու կ'օրրէ զայն յուշերով երազներով անմեկին*

*Աննիւթական բազուկներ կ'ողջագուրեն ջերմագին,*
*Մըտածումներս յոգնաբեկ ու խորհուրդներս ալ մըթին*
*Երբոր աչքերդ հայելուին սրտիս սիրոյ լճակին...:*

5-5-31, Փարիզ



# ԿԻՐՔԸ

Ինչպէս սովալլուկ գազան մը վայրի՝
Քաղցէն մըտրակուած յար կը գալարուի
Եւ կատաղութեան մռնչիւններով
Շրջապատն ամբողջ կը լեցնէ ահով,

Կիրքը շըղթայուած, մընացած անյագ,
Այնպէս կ՚սպառնայ իրերուն համակ
Ու կարծես կեանքի ժամանակն յաւէտ,
Կ՚ուզէ վայրկեանին մէջ ընել անհետ:

Բայց շղթայազերծ՝ երբոր մոլեգին
Կը վազէ, կ՚ոստնու որսի քամակին
Եւ ակընթարթի մէջ կը լափէ զայն,
Յանկարծ կը փոխուի նպատակն համայն:

Հոգւոյն արգանդէն, մըտքին ծալքերէն
Կը բըղխին թորեալ իղձեր ուղխօրէն
Արեւ կը հագնի հորիզոն մ՚անծիր
Ու կեանքի ճամբան կ՚ըլլայ սիրալիր:

10–7–34, Փարիզ



* * *

Օր. Ք. ին

Ուղիներով մոլորուն, դու պուրակն ես երազին,
Հըրապոյրներդ բազմերանգ կախարդանքով մ'անմեկին
Կը դարպասեն սրտիս հետ, որ միամիտ հաւատքով
Մանկան մը պէս հըմայուն, խենթի մը պէս է գինով...
Սակայն սիրոյ պարտէզին երանութեան մէջ անծիր
Անմիտ սիրտս խըռով, կասկածանքով մը պատեր,
Հարցումներ զայն կ'աղըտեն ու տուայտանք մ'ինքնածին
Օձի նման կ'ոլորուի շուրջն իր ոսկի բաղձանքին...
Մըտածումներս են կառչած վայրկեաններու քըղանցքին,
Յոյզերս ծեծուած են այնպէ՜ս տարապարհակ զըրկանքէն,
Որ կարծես մերթ կը մոռնամ սէրը կեանքին եզերքին.
Բայց դուն գիտցիր, որ սիրտս թիթեռնիկ մ'է երազուն,
Ծաղիկներով կ'արբենայ արեւին տակ օրն ի բուն,
Ու մութի մէջ լոյսի շուրջ՝ կ'ըղձայ հեռ դալ անձնազին...

19-7-34, Փարիզ



# ՀԱՆՐԱԿԱՆՈՑ ՄԸ

Դու ծըլած ես պոռնկացած ընկերութեան՝,
Ամենուրեք յար սերմանած թըշուառութեան
Ու գրկանքի կամ ծուլութեան բիւր հունտերէն,
Եւ իր փառքէն հըռչակուեր ես կի՛ն ապօրէն...

Երիտասարդ ու գարնահամ յոյզերդ համբուն,
Շըւայտանքի ու զեխութեան սեղաններուն
Վըրայ գնուած ըմպելիներն եղան աժան
Քեզ նետեցին յետոյ փողոց երբ յագեցան:

Այնուհետեւ դու մըշտահոս աղբիւրի պէս
Մարմնոյդ հաճոյքն իբրեւ կազդոյր՝ կը բաժանես
Խօլ կիրքերէ հալածական անտէր մարդուն,
Ու մերթ սէրէն վիրաւորուած հոգիներուն...:

Գորովանքդ յորդ, անվերապահ դու քամեցիր
Մարմնոյս բոլոր երակներուն մէջ ըղձալիր.
Քեզմով հիմա լիացած է ծարաւ հոգիս.
Ես խոնջ ճամբորդ՝ եղար ինծի դուն ովասիս:

Ով դու սիրոյ անանձնական, անծանօթ քո՛յր,
Օրհնեալ ըլլան թո՛ղ գրգանքներդ հեշտ ու մոլոր,
Որ թախծանքի պահերուս մէջ ինձ մատուցին
Երանութեան ու մոռացման քաղցր գինին...:

Յուսաբեկուած երազներու երամն համակ,
Տառապանքիդ, գրկանքներուդ ո՛խն անպարփակ
Հոգւոյս մէջ յար իբրեւ վրէժ կը հասուննան
Ու կը սիրեմ քեզ ա՛լ սիրովս եղբայրական։



*
* *

Ամառնային գիշերն հեշտին, իր հունին մէջ գետի նըման
Կը թաւալի երազանքի ու բաղձութեան շունչ մ'իր վրան...
Աստղերն անմար կանթեղներ են, կը խնկարկէ հովը բուրեան,
Խորհուրդներու սիրազալար տաճարին մէջ յաւերժական...:

Ընկողմանած մահճակալին մէջ մեղկօրան ու մեղապարտ,
Աղջիկն ալ չէր աչքերն երկինք, դէպ աստղերուն յառած անթարթ,
Չը յագեցած իր տենչանքին գաղտնիքն անլոյծ, կարծես կ'ըղձայ
Տիեզերքի խուլ Աստուածէն, որ աստ ու անդ կը յամենայ...:

Զոյգ պըտուկներն ստինքներուն, լի հեշտութեան բուռն աւիշով·
Շրթներն ամփոփ հաւաքած են կարծես մարմնին յոյզը խըռով,
Ու դուրս ցըցած --- զգայաւէր, կրքի նշան, — կը պաղատին
Որ իր բաժկին հըպին շրթներն Այծամարդուն տարփամարմին...:

Կախարդանքի կախօրրանին մէջ կ'օրօրուի աղջիկն անվերջ...
Ու կ'սպասէ որ սէրն հոսի երակներուն մէջ իր ստերջ,
Մինչ սէրն իր մէջ ներքնօրէն յար կ'եռայ ուժգին ու կենսայորդ
Բայց ան չըզգար ,զի սիրտն որսուած է Ձանձրոյթէն-անարգ որսորդ:

21-8-1934, Փարիզ



# ՆԱՄԱԿԸ

Բերկրուհիին

*Սրտիս պարտէզի ծաղիկներն ամէն*
*Թառամեր էին սիրոյ ծարաւէն...*
*Ջրկանքը կ՚այրէր արմատներն անոնց։*

*Խինդ ու կարօտով նամակդ ես բացի*
*Ու սիրտս հիմա սիրայորդ առու*
*Սրտիս ծալքերուն մէջը կը հոսի։*

*Բառերդ ինձ համար կ՚ըլլան մէյ մէկ անձ*
*Մին ինծի կուտայ մօր շունչն ու գորով*
*Մին քրոջ սրտի խօսքը փափկասուն։*

*Աչքերս անհամբեր կը լափեն զանոնք*
*Տակաւ կ՚արբենամ ու կը յագենամ*
*Հոգւոյս անօթի յոյզերը բոլոր...։*

*Օրհնեալ ըլլաս դո՛ւն ով հեռաւոր քոյր*
*Քաղցրութիւն հոսի միշտ թող հոգիէդ*
*Կենսուրախ ըլլաս ու գարուն յաւէտ։*

18–6–35

# ԸՆԴՎԶՈՒՄ

Երազներս անցեալ, տակաւ կը մարին…
Համայնաւեր շունչն անցնող պահերուն
Հոգիս կը նետէ բոցին մէջ անհուն՝
Նոր Աստուածներու մեծ պաշտամունքին…

Մտքիս մէջ հիմա, յիշատակներուս
Շղթան ամփոփած կը խոկամ լռին.
Սփոփիս երէկի քոյրե՛ր անմեկին,
Ի՞նչպէս լքել ձեզ տրտում այս ժամուս։

Կ'ափսոսամ քե՛զ ալ անցեալ իմ անտէր.
Այլ անծիր ծովու սառնաշունչ հովին՝
Նոր տեսիլներու իմ սիրտս եմ բացեր…։

Աչքերս ա՛լ գինով՝ անհունին սեւեռ,
Ու ղեկը նաւիս փշրած կամուրջին
Կ'երթամ անծանօթ նոր հորիզոններ։

Հոկտեմբեր 1930, Փարիզ



# ՊԱՅՔԱՐ

Իղձերու անհուն ովկիանոսին
Վիհերուն յանձնուած նաւակ մ'է հոգիս...
Զըրկանք, անարգանք՝ քամիներ ցըրտին,
Ժամանակին հետ կը հարուածեն զիս։

Խաւարն անթափանց կ'իջնէ մերթ չորս դին,
Կ'առնէ ուղեցոյց աստղերն ու լուսին
Եւ խորհրդաւոր կ'ըլլան ինձ մէկէն,
Մահուան հեշտախօս վըհուկներն ամէն։

Բայց անոնք ինծի հին ծանօթներ են,
Չեմ խաբուիր իրենց մեղրաբառ լեզուէն.
Վառած՝ հաւատքիս ջահերն անհամար,
Յոյսերու կանչին կը նաւեմ յամառ։

Քամիներն անսանձ թո՛ղ մըտրակեն զիս.
Շըղթայուած վագրի զայրոյթ մը հոգիս
Կը սաղմնաւորէ ուժովն ամէնի
Հսկայ փոթորկին որ պիտի պայթի։

15–3–33, Փարիզ



# ԳՈՐԾԱԶՈՒՐԿՆԵՐԸ

«Հաց կամ աշխատա՛նք, աշխատա՛նք կամ հա՛ց...»
Անթիւ, անհամար կրծքերէ ժայթքած՝
Փողոցէ փողոց կ'արձագանգէ յար,
Գործազուրկներու պահանջն այս յամառ:

Ծուլութեամբ սնած, յղփացած դէմքեր,
Բութ մըտածումներ՝ յաւերժ անտարբեր՝
Բողոքի, ցասման վեհ աղաղակէն
Պահ մը արթնցած՝ կեանքը կը դիտեն:

Կարծես խլուրդնե՛ր, ահաբեկ, չըւառ,
Յանկարծ դուրս ելած խուղերէ խաւար,
Մուտքը կ'որոնեն իրենց խիղճերուն,
Զի լոյսը իրենց մահն է անթաքուն:

«Հաց կամ աշխատա՛նք, աշխատա՛նք կամ հա՛ց...»
Փողոցի սալարկն իսկ է դայթակղած՝
Մինչ օրէնքն անսասոյգ, աւելի դեռ քար,
Կ'ուզէ խափանել կանչերն այս խելառ...:

Անդուլ վաստակով հասնացած դէմքեր,
Որոնք տարինե՛ր աշխարհն են կերտեր,
Փոխան հանդիստի՝ վարձքն իրենց արդար —
Գո՛րծ կը պահանջեն ապրելու համար:

*Թարմ ու կենսալից եր՚տասարդ ուժե՛ր,*
*Դեռ չի բողբոջած, քաղցէն են աւեր...*
*Ո՛վ դու մարդկային չնական հեղնանք,*
*Կեանքին բեռցեր ես միայն տառապանք:*

*«Հաց կամ աշխատանք, աշխատա՛նք կամ հա՛ց...»*
*Գոռա՛նք ընկերներ, զայրոյթն հրդեհուած*
*Թող վառէ անվերջ մեր սրտերը վէս,*
*Թո՛ղ բողոքն աճի հեղեղատին պէս:*

*Որպէսզի բոլոր մտքերն ուծացած,*
*Որպէսզի մեզ խորթ աշխարհն այս հիւնցած,*
*Խլուած՝ բոցերէն մեր հոծ բարկութեան,*
*Ժամանակին մէջ խսպա՛ռ մոխրանան...:*

10-9-33, Ալֆորվիլ

Գրուած՝ ցոյցի մը առթիւ



# ՏԻՄԻԹՐՕՓԻՆ

Պատկերիդ առջեւ միտքս է խորասոյզ ամէն իրիկուն
Դուն եգիպտական արձանի մը պէս կանգուն, հաստատուն,
Կարծես դարերուն կը նայիս ուղիղ, կը նայիս յամառ
Եւ աւազ քամին ի զուր կը զարնէ դէմքիդ անդադար:

Ճակատիդ վրայ մըտածումն անվերջ կը լուսաւորէ.
Շրթներդ պրկուած՝ կարծես սանձէին պատգամներդ հրէ
Ու կամքդ, որ նժոյգ կ'ըլլայ քառասլաց երբ արձակեն զայն
Անարդարութեանց դաշտերուն վրայ՝ ի սէր յաղթութեան:

Կ'ուզեմ հաղորդուիլ մտքիդ ամրակուռ, հոգւոյդ կրանիթ
Համայն աշխարհի պրոլետարիատի պարծանքն է ոգիդ,
Դուն որպէս մագնիս քեզի կ'առինքնես սրտերը վըհատ
Եւ անոնց ուժիդ հոսանքը վառող, կուտաս անընդհատ:

Դուն մայր ցամաքին, անխախտ հաւատքին կոչն ես անընկուն
Անդունդին վրայ ու փոթորկին մէջ կորսուած նաւերուն,
Զի փարոսի պէս լոյսեր կ'արձակես դուն յաւերժօրէն
Խաւարն անթափանց մինչ արդ գրկեր է սահմաններդ ամէն:

Երբ քեզի նման կան անզուգական մարդիկներ հզօր,
Պայքարն ընչազուրկ մեր դասակարգին՝ ընդդէմ կամակոր
Հարստահարող ու միշտ դիշակեր կապիտալիզմին,
Անպայման կ'առնէ կոմունիստական կեանքի լոյս դափնին:

1933 դեկտեմբեր, Փարիզ

# ԱՄԲՈԽԻ ԿԱՆՉԸ

*Երբ սենեակիս առանձնութեան մէջ լռին,*
*Թըղթին, գըրին մըտերմանամ սրտագին*
*Ու սաւառնի միտքըս արծուի մը նըման,*
*Անցեալին մէջ մարդկային լայն պատմութեան.*

*Կամ ձերբազատ՝ հոգի խայթէն թունաւոր*
*Ու ձանձրոյթի ճիրաններէն արնածոր,*
*Ես կ՚արբենամ երանութեան մէջ անհուն,*
*Գեղարուեստի խորհուրդներուն իմաստուն.*

*Վայրի ուժեր հոգւոյս վազքը կը դարձնեն*
*Դէպ խուճալ իր սանձարձակ արշաւէն*
*Ու բռնօրէն կը բերեն զայն ներկայի*
*Ամենօրեայ պայքարին մէջ կատաղի...:*

*Ինձ կը թուի, թէ փողոցին մէջ մարդիկ*
*Կը մարտընչին ժամանակին հետ սաստիկ,*
*Եւ ամէն պահ յաղթանակէ յաղթանակ,*
*Ապագային կը բարձրանայ մի բանակ...*

*Մինչ ես հեռու այդ պայքարէն սրբազան,*
*Կը պահուըտիմ խոհերու մէջ դաւաճան...*
*Արդ խղճահար՝ դուրս կը վազեմ անձկօրէն*
*Ամբոխ հոգիս տալու ընդմիշտ ամբոխին:*

5–12–33, Փարիզ

# ԱՐԹՈՒՆ ԿԵՑԷ՛Ք

Գաղթահայ աշխատաւորութեան

Երբոր կը դիտեմ արեւահար դէմքերը պրոնզ,
Հովէն, անձրեւէն յաւերժ մորակուած դէմքերն եփենոս,
Ու ձեր աչքերուն մերթ երազն հոսուն, մերթ բո՛ցը վըսեմ,
Ձեր հոգին հոգւոյս մէջը կը հոսի, ձեզ ի՛նչպէս չերգեմ:

Դուք խրճիթներու խոնարհ պատերուն մէջ աշխարհ եկաք,
Դաշտերն անսահման, տըւին ձեր սրտին տենչերն անպարփակ,
Լեռներ ուսուցին ձեզ ըլլալ խրոխտ, ըլլալ աննըկուն,
Մայր հողը ջամբեց աւիշն յորդահոս ձեր երակներուն.

Բայց խորշակներու վայրի մոլուցքէն վաղաժամօրէն,
Ինչպէս ծաղիկներ կը խլուին զիրենք ծընող թուփերէն
Եւ հովի խելառ քըմայքին հըլու՝ կ'իյնան անդ ու աստ,
Դուք այնպէ՜ս կեանքի բոլոր ափերուն բացիք առագաստ:

Ձեր ամէն մէկի աչերուն խորքը աշխարհ մը կ'ապրի,
Աշխարհ մ'անանուն սարսափով հերկուած, զըկանքով բերրի
Ուսկից վրէժի եւ ատելութեան սերմեր պիտ՝ ծըլին
Երբ ժամանակին ժանգը չաւերէ ձեր արոյր հոգին:

Զգո՜յշ ընկերնե՛ր, թշնամին միշտ այն հրէշն է միայն,
Որ ամենուրեք ուտիճի նըման, տըզրուկի նըման
Անգութ վաստակող մեր բազուկներուն արիւնը կ'առնէ
Նա կըլլանելու իր սոսկ բնութեամբ մեր բորենին է:

*Երբեմն հաւատքի դիմակին ներքեւ իր բիւր զոհերուն*
*Ան կը ներարկէ այլասերումի, տգիտութեան թոյն,*
*Ու մերթ ցեղային սուտերու վհուկ՝ ի շահ իր Եսին,*
*Իրար կը զարնէ խուլ ամբոխներու կիրքերն ոճրածին:*

*Թող գիտակցութեան ջահեր մեր մտքերն վառեն տենդագին*
*Քունը պարտասման թող ոչ մի վայրկեան ըլկէ մեր հոգին*
*Քանզի թշնամին գոյն ու ձեւ կ՚առնէ ամէն մի րոպէ*
*Եւ իր երախին մէջ անյագ ըզմեզ անդուլ կը նետէ:*

*Արթուն կենանք յա՛ր, ո՛վ աշխատանքի հերո՛ս ընկերներ,*
*Զի մութն անընդհատ կ՚ըսպառնայ մեզ տալ թմբիրն յոգնաբեր*
*Ուխը կրկնօրէն, զայրոյթով ուժգին թող զինուի մեր մէջ*
*Հուրը պայքարի դասակարգային արծարծենք անվերջ:*

28-3-1934, Փարիզ



# ՊԱՅՔԱՐ

*Ինչպէս բաժկի մը մէջ փակ՝ ըմպելիներն համադամ,*
*Բաց օդին մէջ տարրալոյծ՝ կ՚ըլլան տակաւ դառնահամ,*
*Հոգւոյս խղճերն ու սէրերն արդ պայքարին մէջ կեանքին,*
*Գիտակցութեանս լոյսին տակ ատելութեան կը փոխուին...։*

*Սալին վրայ զրկանքին, թշուառութեան առօրեայ*
*Մ՚ըտածումներս անդադար երբ կը ծեծուին անխնայ,*
*Հոծ վրէժի ու ցասման հրդեհն իմ մէջ յուսաբեր՝*
*Կատաղութեան մոլուցքով կը բորբոքի անհամբեր...։*

*Ու թերկրութիւն մ՚անսահման կը համակէ զիս յանկարծ,*
*Համբոյրներուս հետ սիրոյս՝ կ՚ըղձամ ես այդ հուրն արծարծ*
*— Ատելութեան, վրէժի այդ հուրն այրող, ոխակալ, —*
*Ամենուրեք տա՛լ առա՛տ՝ հոգիներուն տառապեալ,*

*Որ անոնց մէջ մահանան ստրկութեամբ ուծացած*
*Համբերանքներն ու մութ յոյս ջամբող ամէն կոյր Աստուած...*
*Որ դառնութեան հալոցին մէջ ագուցուած ամրօրէն,*
*Ազատ կեանքի պահանջքով իրենց սրերն ա՛լ սրեն...։*

Փարիզ, 29-5-34

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻՆ

*Երբ որ պատմութեան աշխարհացոյցին վրայ կը դիտեմ*
*անցեալդ հինաւանդ,*
*Ու կը հաւաքեմ խորհուրդներս համայն՝ գծելու կեանքիդ*
*պատկերն իմ դէմ,*
*Ինծի կ'երեւիս խորհրդանըշան մարտիրոսութեան եւ*
*համբերանքի...*
*Խորհրդանըշա՛ն՝ անխախտ հաւատքով արդար իտէալի*
*մ'անվերջ ձըգտումին։*

*Դարե՜ր չարունակ, ինչպէս սովատանջ գազաններու մէջ*
*ինկած որս անբաղդ*
*Դուն յաջողեցար մերթ տըգիտութեան, մերթ կո՛յր*
*հաւատքի ճիրաններէն բիրտ·*
*Սակայն ամենէն աւելի վայրագ բըղըքտեցին քե՜զ, ընչա-*
*քաղցութեան*
*Ու լոկ կեղեքման անյագ տենչերով ատամներ սըրած*
*հորդաներն անարգ...։*

*Նաւաբեկումէ հազիւ խուսափած, մահուան երկունքէն դեռ*
*նոր արթընցած*
*Մարդու մը նըման, որ աչքերն յանկարծ արեւի լոյսին կը*
*բանայ հրճուած,*
*Կեանքի լայն շունչին բացեր ես թոքերդ ու գերմարդկային*
*ճիգով մը նորոգ՝*
*Փարեր ես հողին..., կը տենչաս անոր ուժերովն անբաւ՝*
*կերտել ապագադ։*

*Դու փոքրացե՜ր ես, սակայն աւերակ վանքերուդ փոխան*
*այսօր կը կանգնին*
*Սուրբ աշխատանքի՛ հըսկայ տաճարներ, ուր լոկ գիտու-*
*թեան հաւատքը կ'աճի*

Եւ այդ հաւատքի հոսանքով բեղուն՝ հողերդ անապատ՝
կեանքով կը ծաղկին,
Շո՛ւնչ կ'առնեն քարե՛րդ, եւ ջըրի ամէն երակ բարիքի
աղբիւր կը դառնայ...:

Հըրելով մէկդի, ճեղքելով յամառ՝ պատմութեան բոլո՛ր
դարերը խաւար,
Կենսարծարծ ու բորբ մի նո՛ր արեգակ ծագեր է վըրան
երկնակամարիդ...
Ու զերդ ծիածան համերաշխութեան՝ ցեղային անդուլ,
խուլ պայքարներու,
Եղբայրակցութեան լոյսերով կ'օծէ արդար վաստակող
ձեռքերն յաղթական:

Դուն անսահմա՛ն ես, զի ողջ աշխարհի դատող մարդկու-
թեան կարմիր դըրօշին
Վըրայ գոյացած համաստեղծութեան, արդէն լուսարձակ
աստղերէն մին ես...
Եւ հիմերդ այնպէս հաստատ կը դըրուին՝ երկար, կրանիթ
տարրերով շաղուած,
Որ քու հինաւուրց, ըստորերկրեայ դեւերդ իսկ շարժին,
կը մընաս կանգուն:



# ԿԱՐՈՒՀԻՆԵՐԸ

Նուէր՝ Փարիզահայ կարուհիներուն

*Արեգակին առաջին շողերն երբոր բարձրանան,*
*Անոնք արդէն նստած են մեքենայի յանդիման,*
*Ու կը կարեն անընդհատ, մինչեւ լոյսերն ամփոփուին*
*Գիրկն օրհնաբեր գիշերին ու գայ թըմբիրը քունին:*

*Ապսպրանքն է հապճեպ ու գործն հարկ է որ մաքուր*
*Գործատիրոջ յանձնուի, թէ չէ միւս օրն է թափուր*
*Ու կ՚երեւին դրկանքին ժանիքները բըրտօրէն,*
*Թըշուառութեան մըթագոյն վարագոյրին ետեւէն:*

*Խըղճմտալից աշխատանք կ՚ուզեն տէրերն ըստահակ,*
*Շահագործման մըտրակի հարուածներուն տակ վայրագ.*
*Ու կարուհին մեղմ ըմբոստ, երբեմն հըլու տաժանքին,*
*Կը դընէ խիղճն իր հացի նըժարին մէջ՝ դողդղագին:*

*Քաղաքակիրթ ոստանի, փարթամութեան սեղանին*
*Գերուհիներն են անոնք, որ օրն ի բուն կը տըքնին*
*Եւ կը հոսի կեանքն իրենց որպէս աժան կենսահիւթ*
*Շուայտութեան, գեղխութեան բաժակին մէջ չիթ առ չիթ...:*

*Մերթ պատանիներ աննեցուկ՝ արդէն կաշկուած ձեռներով,*
*Մերթ այրիներ բախտագուրկ՝ որ կեանքին հետ են խըռով,*
*Ու մերթ կոյսե՛ր ըղձալիր, որոնց երազն է դեռ վառ,*
*Ձըրկանքին մէջ կը նետեն իրենց օրերն յամրաբար...:*

Աշխատանքը սրբազան՝ կ'ըլլայ ճիւաղ մ'հողէառ,
Որմէ խոյս տալ կը ճգնին յոգնաբեկներ մերթ անճար·
Բայց ան սեղմած է զանոնք ճիրաններով առօրեայ,
Ուր բաղձանքի խոյանքներ կ'ըստրկանան ակամայ...:

Ամէն անգամ երբ դիտեմ ձեր աչքի լոյսն անսահման,
Որ կը հիւծի, կը հատնի լոկ օրհացի մը փոխան,
Ո՜վ իմ քոյրե՛ր, կ'արիւնի սիրտըս կըրծքիս մէջ լըռին·
Կ'ըղձամ բառնալ խոնջէնքն, որ կը ծանրանայ ձեր ուսին,

Ու կը սեղմեմ բռունցքներըս ու կը սեղմեմ ատամներս,
Ատելութեան, վրէժի կ'անցնի հոսանքն հոգւ՛ս ներս...
Ա՜հ, լեցուցէք, լեցուցէք ձեր տառապանքն ալ իմ մէջ·
Շահագործման դէմ կռուի սուրբ հուրն ըլլայ թող անշէջ...:

6-7-34, Փարիզ





# “ l’Humanité ”ին

(Օրկանի Ֆրանսայի Կոմ. կուսակցութեան)

*Ընչաքաղցութեան, շահագործումի զարկերէն յոգնած,*
*Պուրժուազական աշխարհի ցանած կեղտերէն սեւցած,*
*Ամէն առաւօտ քեզ իբրեւ բաղնիք՝ կազդոյր ներմուծող,*
*Կ՚ընդունիմ հրճուած՝ մաքրութեան կարօտ հոգւոյս ու մտքիս։*

*Սուտի, նեխանքի ու ծանականքի, քըսութեանց մէջէն*
*Քե՛զ, իբրեւ ազատ խօսքի վա՛ռ մատեան կը գտնեմ, կ՚առնեմ.*
*Հոգերէ խոցուած ու տանջագալար ամբոխին մէջ, քե՛զ*
*Իբրեւ հաւատքի ու ճշմարտութեան դըրօ՛շ կը պարզեմ։*

*Մատերիալիզմի, գիտութեան լոյսին զերդ նըշանաբան*
*Պրոլետարիատի անսպառ ուժին զերդ խորհրդանիշ՝*
*Մուրճ խաչաձեւ մանգաղին վրայ՝ կոչն է անխափան*
*Քաղքին ու գիւղին համերաշխութեամբ կեանքի վերելքին։*

*Կոչըդ կը սուզուի հանքերու մըթին, խոնաւ ընդերքին*
*Ու կ՚արձագանգէ գործատըներու ժխորին մէջ խուլ.*
*Կը հասնի ծովու, հողի վաստակող բիւր բանուորներուն*
*Եւ ինչպէս ճաճանչ՝ կը լուսէ անոնց սըրտերը մռայլ։*

*Կոչըդ կը հասնի կապիտալիզմի կեղեքիչ լուծին*
*Ակամայ պաշտպան այն գինուորներուն, որոնք յամրօրէն*
Մեծ փորձառութեան *խօսքովն են գինուած կեանքի մարտին մէջ,*
*Եւ յոյս կը ջամբէ քաղցի, աքսորի, բանտի զոհերուն,*

Գիշերէն առաջ դու շրջան կ՛ընես աշխարհը համայն,
Ու կեանքի բոլոր հորիզոններէն, կը բերես մեզի
Արձագանգն՝ հանուր աշխատող, կռուող, յաղթող ձեռքերուն.
Կոչըդ նման է անխափան ծագող արեւի լոյսին:

Մեզ խարազանող տառնաշունչ բուքին մէջ դու խարոյկն ես,
Նենգ խաւարին մէջ, դու մեր ուխտին այն մշտավառ ջահն ես,
Որուն անըսպառ բոցերէն կառչած մութի ոգիներ
Լիրբ ատելութեամբ կ՛ոռնան քեզ իսպառ մարելու համար:

Ու մերթ կը թըւի թէ պիտի շիջիս, սակայն ամէն օր,
Պողպատէ կամքեր կը վերարծարծեն, քեզ վեր կը բռնեն,
Ու դուն հեւ ի հեւ՝ օրերու կռուին մէջ գերդ առաքեալ՝
Ցոյց կուտաս լոյսէ ուղին մարդկութեան մեծ յաղթանակին:

12–11–34, Փարիզ

 ՎԵՐՋ 



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՎՐԻՊԱԿՆԵՐ

էջ 19 4րդ տան 2րդ տողին մէջ *հուլօրէնը* կարդալ՝ *յուլօրէն*.

էջ 31 առաջին տան 4րդ տողին մէջ *հուլօրէնը* կարդալ՝ *յուլօրէն*.

էջ 33 երկրորդ տան 3րդ տողին մէջ *պարարն* կարդալ՝ *պալարն*.

էջ 35 2րդ տան առաջին տողին մէջ *ձեռներուն* կարդալ՝ *ձեռներուդ*.

էջ 36 առաջին տողին մէջ *խե՛ղճ եմը* կարդալ՝ *խի՛ղճ իմ*.

էջ 37 4րդ տան երկրորդ տողին մէջ *մըռըջեմը* կարդալ՝ *մըռընչեմ*.

էջ 59 2րդ տան երկրորդ տողին մէջ, *ոսը* կարդալ՝ *ես*.

էջ 68 5րդ տան 2րդ տողին մէջ *յըղէ*ն կարդալ՝ կը նմանի.

էջ 71 3րդ տան առաջին տողին մէջ *չքթայազերծը* կարդալ՝ *չղթայազերծ*.

էջ 72 վերջին տողին մէջ *անձնագինը* կարդալ՝ անձկագին.

էջ 87 երրորդ տան երկրորդ տողին մէջ *համաստեղծութեանը* կարդալ՝ *համաստեղութեան*.
իսկ յաջորդ տողին մէջ *երկարը* կարդալ՝ *երկաթ*։



Այս հատորին տպագրական ծախքերը հոգացուած են
ժողովրդական հանգանակութեամբ

---

Կողքը սիրայօժար նկարեց՝ Մ. ՔԷՊԱՊՃԵԱՆ

---

**ԳԻՆ 100 ՖՐԱՆՔ**



---

Imp. B. ELEGUIAN, 66, Rue Mouffetard, Paris-5e

